# ԽԱՆԳԱՐՄՈՒՆՔ

# ՀԱՅԿԱԲԱՆՈՒԹԵԱՆ

## Ի ՀՆՈՒՄՆ ԵՒ Ի ՆՈՐՈՒՄՍ

---

ԳՐԵԱՑ

ԳԱԲՐԻԷԼ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԱՅՎԱԶԵԱՆ.





Ի ԹԷՈԴՈՍԻԱ,

*ի Տպարանի Խալիպեան Ուսումնարանին*

---

**1869** = ՌՅԺԸ.

ՏՊԱԳՐԵԱԼ ԱՐԴԵԱՄԲՔ

# ԱՂԱ ՍԱՐԳՍԻ ՏԻԳՐԱՆԵԱՆ

ՎԵՐԱՏԵՍՉԻ

ԽԱԼԻՊԵԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻՆ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ

ՈՐ Ի ԹԷՈԴՈՍԻԱ.

---

Մին յաղետալի անցիցն անցելոց ընդ հայկազեանս մատենագրութիւն ընդ ժամանակս ժամանակս՝ է խանգարումն եւ այլանդակել լեզուիս մերոյ, որ սովորաբար անուանի *գրոց բարբառ*, ի շարագրածս եւ ի թարգմանութիւնս եղեալս նախ ի ձեռն հելլենախօս թարգմանչաց ոմանց ի հինգերորդի դարուն եւ ի մետասաներորդին, եւ երկրորդ՝ ի ձեռն լատինահայոց եօթնեւտասներորդի դարուն, եւս եւ երրորդ՝ ի ձեռն ոմանց ի Հայոց բնակելոց երբեմն ի սահմանս պետութեան Ռուսաց:

Աղետալի ասեմք զիրսն, զի զոր օրինակ տեսիլ աւերակաց նիւթական շինուածոցն նշխարելոց ի նախնեաց անտի մերոց՝ սովոր է արտասուս ցաւոց ցընդեցուցանել ի հայրենասէր սրտից, ոչ ինչ ընդհատ ի նոցանէ ողբոց եւ աւաղանաց է արժանաւոր եւ այս տեսարան փլատակաց հոյակապ բարբառոյս մերոյ՝ այնպէս գեղեցիկս բարգաւաճելոյ ի ձեռս թարգմանչացն մերոց առաջնոց եւ միջնոց, եւ որոց զհետ նոցա կացին հետեւողաց յստակաբանութեան նոցին:

## Ա.

Անդստին ի թարգմանչացն ժամանակէ գտան ոմանք՝ որ զսեպհական տիպս կերպարանաց հայկազնեանս լեզուի ի բաց թողեալ՝ իբրու խոշորս ինչ եւ անհարթս եւ թանձունս, զհելլենական բարբառոյն ախորժեցին զգեցուցանել նմին զձեւ ողորկ եւ զյօրինուածութիւն ճախարակեալ. Թէպէտ եւ անիմանալի այնու գործէին զբանսն բնիկ հայրենակցաց, եւ իւրեանցն իսկ ժամանակակցաց, թող թէ յետնոցս եւ ապազայից:

Ցար եւ նման տեսանեմք զսակաւուցն այնոցիկ զգործ այնմ, զոր մերոյ ժամանակիս բանասէրք ոմանք եւ բանաքաղք՝ ի թարգմանել իւրեանց յեւրոպական լեզուաց, մանաւանդ ի գաղղիականէն, յաշխարհիկն մեր բարբառ՝ զվիպասանութիւնս եւ զհատուկտիր մատենիկս կամ զհատուածս լրագրաց, մյնքան այլանդակեն զշարագրածսն, իբրու զեւրոպականացն նրբութիւնս ի մերն փոխաբերել կամելով, զի ոչ միայն դժուարիմաց եւ մթին գործեն զթարգմանութիւնսն, այլ եւ զզուելի հայ ականջաց:

Օրինակս այնպիսեաց հելլենախօս մատենագրութեանց ունիմք աւանիկ ի թարգմանութիւնս գրենոյն Փիլոնի եբրայեցւոյ, քերականութեանն Դիոնեսիոսի Թրակացւոյ, գրուածոցն Արիստոտելի, եւս եւ գրոցն Պղատոնի եւ այլոց, եւ որոց ի նոցին սակի են մատենագրութեանց: Եւ պարագլուխ հետամտից այնր նորաձեւութեան երեւի լեալ առաւելապէս մին ի թարգմանչաց անտի մերոց՝ երանելին Դաւիթ Անյաղթ Ներգինացի:

Սորա կարծիս ի մտի եղեալ, որպէս բանիս կարգ է ասել, թէ հայկականս մեր բարբառ՝ որպիսի յայնժամ յեկեղեցական պաշտամունս վարէր, եւ գուցէ ի բերանս բնակչաց Արարատեան նահանգին եւ Վասպուրականի եւ Բարձր Հայոց եւս լսելի լինէր, — մանաւանդ յազնուականացն եւ ի գիտնոց բերանս, — թերի յոյժ իցէ եւ չքաւոր, եւ անյարմար ի բացատրութիւն ուսումնական մակացութեանց, հնարեցաւ հելլենացուցանել ըստ կարի զլեզուս մեր. զգեցոյց սմին ոչ միայն զձեւ եւ զհանդերձ հելլենականին, զի այսպէս ասացից, այլ եւ զմիսն եւ զմարմին, միայն զոսկերոտին կամ զկմախսն պահելով հայկականս, եւ այնպէս առաջի արար ազգիս մերում մեծահատոր գրուածս՝ յանօգուտ որոճումն ուսումնասիրաց եւ գիտնոց, եւ յանտեղի հիացումն տգիտաց եւ պարզամտաց:

Քանզի եւ զինչ ինչ արդեօք կարող էր Հայ ոք ի Հայոց ժամանակին — եթէ չէր հմուտ հելլենական բար-

բառոյ — ի միտ առնուլ, օրինակ իմն, ի բանից ստորոգութեանցն Արիստոտելի ի ձեռս Անյաղթին թարգմանելոց.

„Ներքակայում ասեմ՝ որ նումեքն ոչ իբր մասն ելով (*ոչ ուրուք „մասն գոլով*), անկար զատ գոլ յայնմանէ՝ յորում են. որգան՝ ոմն „քերականութիւն՝ ներքակայումն է ՚նանձին (*յանձին*), եւ զենթա„կայէ ոչ գումեքէ ասի. եւ այս ինչ սպիտակ՝ ՚ներքակայում է ըն „մարմնի (ի մարմնի). քանզի ամենայն գոյն ըն մարմնի, իսկ զեն„թակայէ ոչ գումեքէ ասի... Իսկ ընդմիմեամբք սեռից, ոչինչ է „արգել նոյն տարբերութիւնք գոլ. քանզի վերոյքն զընդմիմեամբքն „սեռիցն ստորոգին. մինչ զի որքանք ստորոգեցելոյն տարբերութիւն„քըն են, այսքան եւ ենթակային եղիցի“։

Եւ կամ քանիք իցեն ի մերազնեայց, որ ուղիղ իմանայցեն զառաջիկայ բանսդ որ ի Պէրիարմէնիաս (յաղագս Մեկնութեան) անուանեալ գրոց նորին իմաստասիրի.

„Բայց մու (*մի*) զշատից՝ կամ զբազումս զմիոջէ ստորասել կամ „ապուսել (*հաստատել կամ ժխտել*), եթէ ոչ մի իմն իցէ ի բազմացն „բաղկացեալ, ոչ իք (*է*) ստորասութիւն մի, եւ ոչ բացասութիւն... „Իսկ առարկութիւն հակասութեան մոյր (*միոյ*) է մասն՝, ոչ եղիցի „պատասխանատուութիւն մու առ այսս. քանզի եւ ոչ հարցումն մու“։

Եւ կամ դարձեալ զառաջիկայսդ.

„Եւ մանաւանդ զի ներհակութիւն քանակին առ ի տեղին թուի գոլ. „քանզի զվերոյն ստորնումն ներհակաւ դնեն, զառ մէջն վայր ստո„րեւ ասելով. վասն զի յոյժ աւելի միջոցին տարակացութեան առ „ոլորտս աշխարհիս գոլ անուանեցին, եւ զայլոցն ներհակացն սահ„ման բացասայց (այսինքն *ի սոցանէ, յայսցանէ*) մակաբերել. „քանզի զյոյժ աւելիքն ի միմեանց տարակացեալք (*զայնոսիկ որ յոյժ „առաւել հեռացեալք իցեն ի միմեանց*) ի նմինց սեռի ներհականս „որոշէ (*բաժանէ յիրերաց իբրեւ ներհականս ի նմին սեռի*)“։

Բ.

Ապա յետ իբրու հազարամեայ յեղափոխութեանց յուզելոց ի Հայաստան աշխարհի ըստ քաղաքական պատահարաց, եւս եւ ըստ գրաւորական երկասիրութեանց, յորժամ եւ մեր աշխարհս հանգոյն այլոց արեւելեան աշխարհաց ծածկեցաւ խաւարաւ տգիտութեան, եւ յարեւմտից անտի սպասեալ մնայր ընդունել զիմաստիցն լուսածագութիւն, սպրդեցան մտին ի Հայս զհետ Խաչակրացն արշաւանաց՝ եւրոպական սովորութիւնք ոչ սակաւք. յեկեղեցիս Կիլիկիոյ՛ հռովմէականին եկեղեցւոյ կարծիք ինչ եւ վարդապետութիւնք, եւ ի հայկականս մեր բարբառ՝ լատինական լեզուի ժամանակին ձեւք եւ գոյն եւ կերպարանք՝ թարգմանութեամբքն եղելովք ի ձեռն Ունիթոռաց լատինահայոց. որպէս յայտ է ի գրուածոց Ոսկանայ վարդապետի Երեւանեցւոյ, Վարդանայ Յունանեան, Բարսղի չհայոյ, Յակովբայ Հոլովի, Պետրոսի վարդապետի Թիֆլիզեցւոյ, Խաչատրոյ վարդապետի Կարնեցւոյ, եւ այլոց բազմաց, եւս եւ Մխիթարայ աբբայի սեբաստացւոյ:

Չիք երկբայութիւն՝ զի որպէս Անյաղթին թարգմանութիւնք հաճոյ էին հելլենասիրաց ոմանց ի Հայոց

հինգերորդի դարուն, նոյնպէս եւ սոցայս աղաւաղ եւ օտարախորթ ասացուածք քաղցրանայնին ի քիմս փռանկամոլից՝ իբրու նորաձեւութիւնք ինչ օգտակարք եւ պիտանիք ի փոխաբերել դիւրաւ զիրական կամ զկարծեցեալ ճոխութիւնս լատին լեզուի ի մերս բարբառ: Ապա թէ ոչ, զիմրդ բնաւ մարթ է հայերենագէտ ազգասիրաց՝ զէթ փոքր ի շատէ թարթափելոց յոսկեղինինկն թարգմանութեան Աստուածաշունչ մատենին եւ ի գիրս եկեղեցական պաշտամանց՝ ախորժել ընդ անալի եւ ընդ շաղփաղփ ասացուածս եւ այլանդակ դարձուածս լատինահայ շարագրութեանցն այնոցիկ:

Օրինակ իմն, որպէս ընթեռնոյր հայ ոք հայ առանց զզուանաց ի նախադրութիւնս Աստուածաշնչին Ոսկանայ զառաջինկայ հատուածս բանից, յորոց զյոյժ անճոռնիսն եւեթ նօտրել շատ համարիմք.

« Եղբայր Ամբրոսիոս, *զփոյայինս ընծայիկս* ինձ ընծե-
« ռեալ՝ *առաքեալ*, *համայն* եւ *զսրակս համեղագոյնս* ».
այսինքն է, զփոքրիկ ընծայսդ քո բերեալ մատոյց ինձ, ընդ նմին եւ զնամակդ քաղցրագոյն:

« Զփարթամագոյնս Հնդկաց թագաւորութիւնս շըր-
« ջագայեցաւ (Աղեքսանդր), եւ *առ ափն՝ լայնեղի*
« *Փիսոնի անեմայնի արշաւեցելով*, եհաս ի Բրաքմանս,
« որպէս *զհիւրաց* նստեալ ի վերայ աթոռոյ ոսկեղինի...

« *Խուռնանչիւն բանն՝ նայնն* (յայնմ) *լիկ են զզացմամբ*...

« Մեծ է անուն իմ ի հեթանոսս, եւ *'նամենում տե-*
« *ղւոյ* զոհ նուիրի. . .

« Ագահին այնքան ոչ գոյ զորքան ունի՛ քան զոր ոչ ունի ». այսինքն ագահին նոյնչափ պակասէ զոր ինչ ունի՛ որչափ զոր ոչն ունի:

« *Նախորդ* վկայութիւնն է *ներ Ովսէում*, երկրորդն *'նեսայում* ». այսինքն առաջին վկայութիւնն յՈվսեայ մարգարէութեանն է, երկրորդն յԵսայեայն:

Չիմրդ հնչիցեն յունկն հայերենագէտ եւ առաջիկայ բանքդ քաղեալք ի բիւրաւոր այլանդակութեանց գրոցն *Օրինակաց եւ Նմանութեանց* (որ ցարդ եւս ի պատուի է առ ոմանս ի մերոցն քարոզչաց եւ այլոց ոմանց գրագիտաց ի Հայս).

« Բարոյականապէս՛ ծովն *առնանի* (առեալ լինի) *երեք կերպիւ* »:

« Արշալոյսն է *ներհեղիչ* ցողոյ »:

« Կեղեւն ձուոյ եթէ լնանիցի ցողով, եւ *բարեպես*
« *փակեցեալ*՛ դնիցի ի սաստկագունի ջերմութեան ա-
« րեգական՛ առընթեր *ձողի միոյ ուղղոյ*, *տեսանի այն*
« *եղանել ի գագաթ նորին ի յուսորոյ* »:

« Եթէ պատահմամբ· *խմիւ* շունչն *արգելանիցիւր* ի
« միոյ կողմանէ, *պահպանիցիւր* ի միւսոյ կողմանէ. զի
« մի փասն *ներփակման շնչոյն* կենդանին *մեռանիցէր* »:

« Սեւութեամբ մեղաց իւրոց *նփողեցեալ*, *ի նոյնոյ*
« *կենդաղոյ ընկենանիլ եւ ի բաց թողանիլ* » եւ այլն:

Ներեսցեն ընթերցողք զգուել զականչս նոցին եւ հաստուածով մի բանի *Պասարագամատոցին Ունիթոռաց* տպագրելոյ ի Հռովմ՝ այսու խժական մակագրու-
«թեամբ. «Միսալ, որ է պատարագամատոյց սրբբա-
«զանի կարգին եղբարց Քարոզողաց (Դոմինիկեանց),
«*առաքելական* (իմա *պապական*) իշխանութեամբ *հաս-*
«*տատեցեալ, պաշտօնականացուցեալ Հօր* (Reverendissimi Patris)
«Եղբօր Թօմայի Րիպօլ, *նոյնոյ* կարգին *Ընդհանրալ* վար-
«դապետի հրամանաւն *տպագրեցեալ* ի Հռոմ, ՌՉԻԸ,
«ի տպարանի սրբոյ ժողովոյն *դէ Փրոփականդայ ֆիդէ*
«(de Propaganda fide, տարածման հաւատոյ)»:

Ցայտ իսկ է ի խորագրէ այտի՝ թէ որպիսի ինչ եւ բովանդակութիւնն իցէ. սակայն բեր քաղեսցուք եւ անտի սակաւ ինչ ի բազմացն աղխազուր սաս-
ցուածոց.

«*Խորին խոնարհեցեալ*՝ ձեռամբ *կցեցելով* առաջի *կըր-
ծոց*՝ *միջակարաւ* ձայնիւ ասասցէ...

«*Նոյնով* ձայնիւ *յառաջահեղեցիցի* (prosequatur, յա-
ռաջ տարցէ)...

«*Ջերկուսեան* ձեռս այսպէս ի վերայ *ակնոյն ըմ-
բռնեսցէ*...

«Ի վայր իջցէ ի *ցածագունեղ* աստիճան սեղանոյն...

«Վարիմք *այնպիսակաւ ձունով* ի յերեկոյեան ժամէ *վինիլի* (ճրագալուցի) Ծննդեան Տեառն, մինչեւ ի *յու-
րօրկն* յայտնութեան *ներփակապար* (inclusive, փաղա-
ռութեամբ)...

«*Չարչարեցեալ*, *խաչեցեալ*, *թաղեցեալ*, յերրորդ աւուր *յարեալ*. . .» եւ այլն եւ այլն:

Ցանախեցաք զօրինակսդ՝ իբրու զայնր ժամու լեզուիս մերոյ զվէրսն խղխայթեալս մատնանիշ առնելով. բայց եւ ուրախ եմք զի ոչ առձեռնպատրաստ ունիմք զհարիւրաւոր գրեանն հրատարակեալ յընթացս ամաց իբր հարիւրոց այդու ապականեալ լեզուաւ: Շատ լիցին սակաւքդ ի հաւաստիս ասացելոցն ի մէնջ ի սկզբան աստ աւաղական բանից, եւ ի յորդոր ազգասիրաց՝ ի փոյթ պահպանութեան ոգւոյ եւ ոճոյ նախնեացն մերոց շարադրութեան եւ հարազատ հայկաբանութեան:

Սակայն հարկ ի վերայ կայ ասել, զի եւ յայնմ թանձրամած տգիտութեան ժամանակի բազումք յոյժ էին որք ակնյայտնի տեսանէին զխորթութիւնս այնը լեզուի, եւ զամենեւին օտարութիւն բառիցն եւ բանից այնպիսեաց ի նախնեացն ուղղախօսութենէ. վասն որոյ եւ լռութիւն ազգիս առ սակաւ մի եւեթ ժամանակ լռութեամբ իմն ընկալեալ զանճոռնի նորաձեւութիւնսն, ապա իսկոյն ի բաց եթուք. եւ մնաց խաղտալուրն այն բարբառ իբրեւ ի սեպհական բաժին եւ ի կնիք լատինացեալ հայկազանց ժամանակին. որք եւ պահանջէին — յուզեալք ի հռովմէական բռնութենէն — զի որք միանգամ կամիցին զողջամիտ ուղղափառութեամբ (իմա զչերմեռանդն *պապականութեամբ*) թեկն ածել, անպատճառ այնու եւեթ բարբառով մա-

տեՆազրեսցեՆ. ապա թէ ոչ' զիտացեՆ զի կասկածելի եւ կեղակարծ համարեսցի դաւաՆութիւՆ իւրեաՆց, եւ ըՆդ հերձուածողս եւ ըՆդ հերետիկոսս գրեսցիՆ:

ԱռաջիՆքՆ յաշակերտաց Մխիթարայ աբբայի սեբաստացւոյ, որպէս եւ իՆքՆ իսկ Մխիթար, չկարէիՆ ապաքէՆ աՆգիտաՆալ զաՆտեղութիւՆ այՆր պահաՆջմաՆ եւ զաՆիրաւութիւՆ իսկ ՆորիՆ. սակայՆ շուրջաՆակի պատեալք պաշարեալք յօտարազգի եւ ի մերազՆեայ արբաՆեկաց պապակաՆ բռՆակալութեաՆ, ոչ իշխէիՆ աՆդստիՆ ի սկզբաՆէ խորտակել եւ ի բաց լքաՆել զՆորաՆշաՆՆ զայՆ լուծ գերութեաՆ լեզուիս մերոյ: Լաւ համարեցաՆ խարտել եւ սղոցել' բայց տակաւ եւ խելօք' զլուծՆ զայՆ եւ զշղթայսՆ որ ըՆդ ՆմիՆ, յօրիՆելով ուղղախօս բառարաՆս եւ քերակաՆութիւՆս: Մխիթար իւրովՆ ՀայկազեաՆ ԲառարաՆաւ — որ արդարեւ իսկ հիաՆալիՆ էր' ըստ ժամաՆակիՆ հաՆգամաՆաց —, աշակերտք ՆորիՆ ՀայրՆ Մատթէոս Եւդոկիացի «ՊատմութեամբՆ Վարուց ԼուսաւորչիՆ», ՀայրՆ ՎրթաՆէս ԱսկերեաՆ իւրովքՆ յստակախօս թարգմաՆութեամբք, եւ մաՆաւաՆդ ՀայրՆ Միքայէլ վարդապետ ՉամչեաՆ' իւրով ՔերակաՆութեամբՆ, եւ որք յառաջ եւ զկՆի կացիՆ ի ՄխիթարեաՆց աՆտի քերակաՆք եւ մատեՆագիրք եւ թարգմաՆիչք, զամեՆայՆ ջաՆ ի գործ արկիՆ վերածել հաՆել զհայկազեաՆս բարբառ ի ՆախՆիՆ իւր եւ ի բՆիկՆ յստակութիւՆ' զերծ յամեՆայՆ խառՆուածոյ օտարոտի եւ աՆհարազատ բառից եւ դարձուածոց, օրիՆակս շարագրածից

իւրեանց ունելով զընտիր ընտիր մատենագրութիւնս առաջնոցն՝ զգանձեալս ի գրչագիր երկասիրութիւնս նախնեաց: Եւ հարկ ի վերայ կայ ասել՝ զի եւ գեղեցիկս յաջողեցան Հարքն այնոքիկ ի ջանս իւրեանց ի միջոցի աստ հարիւրեմեան անխոնջ եւ անընդհատ վաստակոցն. այնպէս զի ի նոցին գրչութենէ ի վերածնութիւն իմն եկեալ՝ նորափետուր զարդարեցաւ հայկականս մեր բարբառ ճոխ եւ վայելչազարդ իբրեւ զնոր փիւնիկ, եւ հաճոյ եւ ընդունելի եղեւ ուսումնասիրաց ազգիս ողջոյն՝ իբրեւ զվաղածանօթ եւ զանկապտելի ժառանգութիւն հայրենի:

Եւ թէպէտ չեւ եւս համարձակիցի ոք պնդել եւ հաստատել՝ եթէ այժմու հայկաբանութիւն Հարցն Մխիթարեանց որ ի Վենետիկ եւ ի Վեննա՝ այնչափ յղկեալ եւ կոկեալ իցէ ըստ դարձուածոցն եւ ըստ յատկաբանութեանց, զի եւ ի չափ յստակութեան լեզուի ընտրելագունիցն ի մերոց մատենագրաց հինգերորդի դարուն իցէ ժամանեալ, սակայն յայսմ ոչ ոք արդեօք իշխեսցէ մեզ ընդդիմաբանել, զի եթէ ոչ ամենեցուն, այլ քաջագունիցն յարդի Մխիթարեանց գրուածք ոչ յոյժ վերջացեալ գտանին ի յստակաբանութենէ բազմաց ի մատենագրաց այնր դարու, մանաւանդ կանոնաւորութեամբն իւրեանց եւ կարգաբանութեամբ. առ որ յայտ իսկ է զի ոչ սակաւ սատար լեալ է նոցա եւրոպականացն հմտութիւն լեզուաց, իտալականին ասեմ եւ գաղղիականի եւ այլոց, հանդերձ տեղեկութեամբ յոյն եւ լատին դպրութեանց:

Այսմ գովելի յառաջատութեան հայկազեանս լեզուի ի ձեռն Հարց Մխիթարեանց՝ երկու ինչ իրք մեծապէս խափան լինին իբրու յերեսնից ամաց հետէ.

Առաջին՝ տարապայման հետամտութիւն այժմու հայկաբանիցն՝ եւրոպական նորանոր լեզուաց, որոց սեպհական է ընդ անպաճոյճ պարզութեանն եւ պակասութիւն կորովոյ, կամ թուլութիւն եւ երկարաբանութիւն ձանձրալի: Քանզի զոգցես յանհնարիցն իմն է թարթափելոցն ցանզ ի նոցին դպրութիւնս՝ քան թէ ի նախնեացն շարագրածս, զերծ եւ ազատ զիւրեանցն պահել յազդեցութենէ օտարոտի բարբառոցն այնոցիկ, եւ չհեռանալ ի նախնեացն յստակաբանութենէ. ուր իբր երեսնամեայ ժամանակաւ յառաջ առաւել իմն հետամտութիւն զոյր առ նոսա լատին եւ հելլենացի լեզուաց՝ մերձաւորագունից ոճոյ մերումս լեզուի:

Երկրորդն խոչ խափանարար յառաջադիմութեան հայերենախօս յստակաբանութեան Մխիթարեանց — որպէս եւ այլոց ազգայնոցս առ հասարակ — է անհրաժեշտն հարկ ի գործ արկանելոյ զռամկական բարբառս մեր կամ զաշխարհիկն լեզու, լեզու անկարգ եւ անկանոն, տգեղ տժգոյն եւ տձեւ, անընդունակ կորովոյ եւ զարդուց պերճախօսութեան եւ բանաստեղծութեան: Անհրաժեշտ ասեմ զհարկն, զի չեւ եւս մերձեալ թուի ժամանակն՝ յորում յաջողեսցի հայկազն մարդկան, զէթ ուսումնականաց, ի բնիկս մեր հայկական 'բարբառ՝ որ արդ գրոց կոչի լեզու՝ զրուցա-

կից ընդ միմեանս լինել, եւ ըստ այնմ մատենագրել զգրեան եւ զլրագիրս ի պէտս հասարակաց:

## Գ.

Հայկազունք բնակեալք ի Տաճկաստան՝ մերձաւորագոյնք ելով ազդեցութեանն որ յարեւմտից առ նոսա գայր աւուրց յաւուրս, վաղ յստակեցին զհայկաբանութիւն իւրեանց որչափ եղեւն նոցա հնարաւոր, առանց ունելոյ վարժապետս քաջահմուտս արեստի հայ քերականութեան. եւ որք համբաւեալքն իցեն ի նոսա յայսմ մասին, որպէս Փէշտըմալճեան Գրիգոր վարժապետ եւ Վանանդեցին Տէր Յոհան քահանայ եւ այլք ոմանք, ընդ որս եւ Միքայէլ Եպիսկոպոս Սալլանթեան, զրեա թէ ինքնուսոյց հայերենագէտք եղեն, որով թերեւս եւ առաւելագունից արժանաւորք գովութեանց. ուստի եւ թերութիւնքն երեւեալք ի շարագրածս նոցա պարտին դիւրագոյնս ներողամտութեան հանդիպել ի քաջահմուտ հայկաբանից:

Իսկ որ ի Ռուսաստան աշխարհիս հատուածեալ են հայկազունք, ոչ յապաղեցին արկանել յանզգաստից զոճ եւ զյեղանակ գրուածոց իւրեանց ընդ ազդեցութեամբ Ռուսացն լեզուի. եւ եղեւ հայկաբանութիւն ոմանց ի նոցանէ խառնուրդ ինն յաւերակաց նախնեացն բարբառոյ, եւ ի մնացորդաց աղաւաղ լեզուին

լատինեահայոց, եւս եւ յանպէտ եւ յանարուեստ թարգմանութեանց ռուսական բարդութեանց եւ դարձուածոց. ուստի եւ դժուարիմաց յոյժ եւ անախորժ լսելեաց՝ ոչ միայն հայկաբան մարդկան, այլ եւ բնակչացն Տաճկաստանի առ հասարակ:

Եւ զի մի վայրապար թուիցիմք արարեալ դատողութիւն այսպիսի, եւ ըստ ակն խոցիցեմք ումանց, թող ի մէջ բերցուք ի բազմաց անտի հատուածս ինչ՝ օրինակի աղագաւ՝ ի թարգմանութենէ Արկածիցն Տելեմաքայ՝ տպագրելոյ ի Նորն Նախիջեւան յամին 1794.

,,Եռամեծի եւ Գերերջանիկ *Իշխանազնեայ* Իշխանի . . . *Բարձր*
,,*Սրբազնութեանն խոնարհարար նուիրումն* . . . Տարածեալ *հրո-*
,,*չակիւր* համբաւ բարեբոյս բարուցդ . . . Ոչ եւս ունելով *զպիտոյու-*
,,*թիւն* վկայից . . . Վասն *առատութեան* կենացդ *արդիւնաբերի* . . .
,,Ո՞րքան *շնորհակալութեան պարտաւորեալ* գտանին արդեօք . . .
,,Եւ *մանաւանդապէս* վասն անգին գանձուցն *ակնայեռեալ* եւ մար-
,,գարտաշար տպարանին *վերականգնութեան* . . . *Նոյնոյ նորաբող-*
,,*բոջ* գանձարանին . . . Բարեյօժար *հոգաւունակութիւն* ձեր Սրբ-
,,բազնութեան . . . *Չյուսածութիւն* թարգմանութեան *ներկայ գըր-*
,,*քոյս* Թէլամաքի . . .

,,Ներթափանցիլ ի ներքին իմացուածն բանին . . . Որով լի են
,,երկինք եւ երկիր եւ *ամենայն ինչք* . . . Առաջին գիրք դատողա-
,,բականութեան մերոյ *գրեցեալ եղեւ* տեսականաբար *յինքենէ Աս-*
,,*տուծոյ* . . . Ոչ մնալ է նկարագրական արտաքին կեղեւն *մանկ-*
,,*ըեւութեայ* . . . *Սմին սարսափ եւ ներկայ գիրքս Թէլամաքի* . . .
,,*Ցերից աստիճանի անձանց շինի կիրարկեցեալ* . . . Դաստիարակ
,,*Թագազնէի* որդւոյ չորեքտասաներորդի Լուիձի թագաւորին Գալ-
,,լիացւոց . . . Եթէ *մնայցէր* կենդանի . . . Բաց ի *համոզչական*
,,բանից . . . *Հարկադրիւր* ի հասակէ իւրմէ *պարապիլ ի զբօսանս* . . .
,,*Ի ներքոյ այսու պատրուակի* . . . Առ *ի խրել զկորս* Լուիձի թագա-
,,ւորին . . . Մեծաց եւ *փոքեաց* . . . *Կրկնակրկին տպեցմամբ* . . .
,,Ի վերայ *սոյնոյ* բազմիմաստ *գրքոյ* . . . Բաց ի *քաղցրախորժ* շա-
,,րադրութենէ ըստ *հայկականի ոճոյ* . . . Եթէ նա ոչ յորդորեալ *ճըչ-*
,,*դիցէր* զիս այնքան *ստիպանօք* . . . Ցաւակցեալ *խղճաչիք* տկա-
,,րութեանս . . . Հայեցեալ ի *հանկեցմունս* ժամանակին *մարդկանց* . . .

„Քալիփաօ ոչ կարէր մխիթարիլ վասն *չուամանն* Յուլիսի. եւ *ի նէր* „*սոյնոյ ցաւակիր* տրտմութեան իւրոյ համարէր *զինքն ապերջանիկ* „վասն զոլոյն անմահ: Խուղ իւր ոչ եւս *վերանուագէր* զքաղցր եղա- „նակ ձայնի իւրոյ“ եւ այլն եւ այլն:

Այսու ամենայնիւ հանդերձ՝ արդիւնական թարգմանիչ այնր մատենի Մարգար Զաքարեան Խօջէնց երեւանցի ո՛չ ապաքէն արդարանալով արդարանայ — այնու՝ զի խոստովանի զչափաւորութիւն իւրոյ հմտութեանն արուեստի թարգմանութեան եւ հայկաբանութեան — առ ինքնահաճոյ խրոխտանօք եւ անհոգութեամբ մերոցն ոմանց ժամանակակից գրչաց:

Օրինակ իմն, տես որպիսի՛ են ասացուածք եւ որպիսի՛ բացատրութիւնք պաշտօնական անուանեալ յօդուածիդ թարգմանելոյ ի բանասիրէ ումեմնէ՝ որ պարծի պարզմտութեամբ ընդ իւրն յստակախօս հայկաբանութիւն, որպէս պարծէր երբեմն եւ աշակերտն Նիկոլի Վարդան Յունանեան ընդ իւրն, եւ Պօղոս Փիրոմալ ընդ իւրն . . .

„*Ի վերայ հիման* 3-դ յօդուածի *բարձրագոյն հաստատեալ* ի „1-էն փետր. 1862 ամի, կարծեաց թագաւորական խորհրդոյն, *ըստ* „*գործոյն* յաղագս բացման քաղաքական *հասարակական բանկից* „(այսինքն *դրամատանց*), *նախկին կառավարիչն նախարարու-* „*թեան* զանձուց ծանոյց *կառավարիչ սենատին*, վասն *ի նմանէ* „*կախեալ կարգադրութեան*, զի յետ *համաձայնեցման* ընդ կա- „ռավարչին նախարարութեան ներքին գործոց, *բացորոշեալ է ի* „*նմանէ*, ի կառավարչէ նախարարութեան զանձուց, բացումն *հա-* „*սարակական բանկի* ի քաղաքին Տիրասպոլու, ի Խերսոնի *գուբեր-* „*նիայի*, *ի վերայ հետագայ հիմանց*“ եւ այլն:

Եւ ո՞ր հայ կարող իցէ իմանալ ինչ ի խուռն կուտակութենէ այսր բառից եւ բանից՝ եթէ անգէտ իցէ Ռուսացն լեզուի եւ ոճոյ, մանաւանդ ատենական ոճոյ նոցին, եւ չթարգմանիցէ զայն ի միտս իւր ի ռուս բարբառ:

Եւ քանզի զատենական ոճոյ բանից դէպ եղեւ մեզ գրոյց ի մէջ առնուլ, ստիպիմք ասել՝ զի որ առաւելապէսն պատճառս ետ տարածելոյ ռուսահայ շարագրածոց ի կողմանս յայսոսիկ՝ է անարուեստ թարգմանութիւն պէսպէս հրովարտակաց, *ուկազ*ից, *դոկումեն*տից, *պրիվիլեգիայ*ից, *գրամոտ*ից, *րեսկրիպտ*ից, եւ այլն, եւ ի վերջէ բազմահռչակ *պալաժենի*ին, այսինքն է Սահմանադրութեանն յօրինելոյ վասն եկեղեցական տեսչութեան ազգիս մերոյ ի Ռուսաստան. յորս եթէ յանկարծ ի նախնեացն ոք մերոց ի մեռելոց յարուցեալ մտանէր հետազօտել ինչ, անշուշտ յապուշ հարեալ ընդարմանայր եւ հիանայր թէ զիա՞րդ է զի աղաղակ բառիցն հայերէն հնչէ յականջս իւր, եւ սակայն ի գլուխն ինչ ոչ մտանէ ի բազում բանից անտի:

Ապաքէն արժան է չմոռանալ, զի ատենականին ոճոյ բառք եւ բանք ոչ այնպէս դիւրինք են ի թարգմանել՝ որպէս թուի արդեօք անհմտից իրաւաբանական եւ օրէնսգիտական կարգաց: Որոյ վասն եւ յոյժ ներելի են թերութիւնքն որ նշմարիցին ըստ այսմ մասին յատենական գրուածս Սինհոդոսին սրբոյ Էջմիածնին եւ Առաջնորդական Ատենից պէսպէս

վիճակաց: Այսու ամենայնիւ թուի մեզ թէ հնար է ոչ սակաւ յստակել եւ ուղղել զգուշութեամբ եւ զայն ոճ բանից, բառս հարազատագոյնս լեզուիս մերում պատշաճեցուցանելով առ մէն մի ի բառիցն Ռուսաց:

Զայսմ ամենայնէ այսպէս զկարծիս մեր հրապարակել համարձակեցոյց զմեզ ոչ միայն իրացն ճշմարտութիւն, այլ եւ այժմու Աստուածընտիր Հայրապետին մերոյ Գէորգայ Կաթողիկոսի պաշտելին հրաման եւ փոյթ խնամոց՝ զի զամ քան զգամ յստակեսցի հայկաբանութիւն մեր ի Ռուսաստան աշխարհիս, եւս եւ յատենական գրուածս վիճակաց:

Ի կնիք ասացելոցս ցայս վայր զգլխաւոր յեղափոխութեանց արամեանս լեզուի, ակամայ կամօք զկայ առեալ դադարեմք ի վերայ երկուցս այսոցիկ ցանկալեաց ամենայն հայրենասէր սրտից.

Նախ՝ զի մի ռամկական բարբառոյն յաճախակի վարումն ի գիր եւ ի բան՝ խափան լինիցի բարգաւաճեցոյ ի մեզ պատուական եւ նուիրական լեզուիս հայկազնեայ քաջաց եւ սրբոց արանց, միակ ժառանգութեան մնացելոյ տառապեալ որդւոցս յայնպիսեաց անուի հարանց. այլ գործի եւեթ զռամկականն առցուք ի ձեռս մեր՝ ուսուցանելոյ նոյնիմբ մերոյ մանկտւոյն դիւրագոյն իմն հնարիւք զբուն եւ զնախնի հայկական լեզուիս իմացումն, որպէս Հելլենացւոցն առնէ այժմ

ազգ՝ խուռովն ռամկականաւ օր ըստ օրէ վերոտնելով ի հնոյ հելլենականին յստակախօսութիւն, եւ յաջողի սքանչելապէս:

Մի յախուռն արհամարհանօք ընդ ռամկականին վարելով՝ իբրու գրոցն լեզուի նախանձայոյզ ջատագովք, պատճառս տայցեմք ռամկին եւ մանկտւոյն՝ յետնելոյ ի կարեւորացն գիտելեաց ուսմանէ. եւ մի դարձեալ ի հակառակէն՝ զգրոցն բարբառ ընդ մեռեալս գրելով եւ նեխահոտ իմն համբաւելով՝ զարշեցուցանեմք զմերազնեայսն ի նմանէ եւ ի վարժից նորին:

Եթէ ամենայնի չափ իցէ եւ սահման յաշխարհիս, որպէս եւ է իսկ, թող չափաւորեսցի ապա եւ եռանդն հնասիրաց՝ ի պաշտել զգրոցն լեզու. թող չափաւորեսցի եւ ցանկութիւն այնոցիկ որ հաւանեալ են՝ թէ ի բաց թողլով զուսումն բնիկ հայերենիս, եւ զռամկականն եւեթ ի վար արկանելով, արագ արագ հասուսցեն զազգն ի ծագ յառաջադիմութեան եւ մեծի պայծառութեան:

Փորձն եւ օրինակ վերջնոյս յիսնեմեան ժամանակի յայտ յանդիմանութեամբ վկայեն՝ թէ ո՛ր յեղափոխութիւն գործեցաւ ի ռամկական բարբառս ազգիս մերոյ, եւ ո՛րքան դիւրացաւ ամենադժուարինն կարծեցեալ յօրինուած աշխարհիկ բարբառոյ միոյ՝ որ ընդունելի լինիցի ամենայն Հայոց ընդ ամենայն տեղիս. քանզի եւ ո՞ ոք երբէք ի կարծիս լինէր ի սկզբան այսր դարու, թէ մինչչեւ անցեալ զկիսովն՝ այնքան յղկեսցի

եւ կոկեսցի աշխարհիկն բարբառ Հայոց Տաճկաստանի՝ զի հնարաւոր լիցի ախորժ ընձայեցուցանել զայն Հայաստանեայց եւ Կովկասայնոց, եւ թէ զՀայաստանեայցն բարբառս ինչ (զԱժտէրխանին եւ զՏփխեաց եւ զԵրեւանայ) այնքան կարելի եղիցի ողորկել եւ յստակել՝ զի եւ Կոստանդնուպօլսեցին եւ Խրիմեցին առանց զժղմնելոյ առեալ ընթեռնուցուն զգրեալսն յայն լեզուս, եւ իմանայցեն եւս զնոսին:

Ապա ուրեմն թող ժրասցին քաջագոյն մշակքն այգւոյ հայկական լեզուիս եւ դպրութեան՝ ի մշակել զգրոցն ճոխ եւ ազնիւ հայկաբանութիւն, եւ միանգամայն ի յղկել զաշխարհիկն եւ ի մերձեցուցանել զայն տակաւ ի յստակութիւն բնիկ հայերենին՝ որ գրոցն է. եւ զայս արասցեն աներկմիտ յուսով բազմաբեղուն արդեանց, յորս թէ ոչ ինքեանք՝ սակայն յաջորդքն իւրեանց եւ ապագայ սերունդք կշտապինդ վայելեսցեն, եւ օրհնեսցեն զյիշատակս նոցա:

Երկրորդ անգամ՝ զի եւ որք ի սահմանս Ռուսացն Պետութեան գտանին Հայկազունք՝ զամենայն փոյթ ի մէջ առնուցուն ի յստակել զշարագրածս իւրեանց յօտարախորթ եւ ի նորամուտ բառից եւ բանից. որ գործ մի դիւրին էր արդեօք նոցա՝ եթէ ունէին ի ձեռին բառարան մի ռուսերէն եւ հայերէն՝ զգուշաւոր ընտրութեամբ յօրինեալ: Եւ ահա գլխաւորապէս ի ցոյց եւ ի հաւաստիս կարեւորութեան այսպիսւոյ Բառարանի՝ շարագրեցաւ առ ի մէնջ տետրակս:

Յորոյ ի լրումն դիցուք աստէն ըստ կարգի այբու-բենից զոմանս եւեթ ի հարիւրաւոր բառից անտի որ յաճախեալքն են ի շարագրածս Հայոց Ռուսաստանի, նշանակելով զթերութիւնսն իւրաքանչիւր՝ որպէս ինչ մեզն թուեցան՝ հանդերձ պատճառօք թերեւս զի պատճառս տացուք ազգայնոցն բանասիրաց ուղ-ղելոյ եւ զայլս ի նոյնպիսեաց վնասակար խառնախօ-սութեանց:

## ՑՈՒՑԱԿ

### ՕՏԱՐՈՏԻ ԲԱՌԻՑ ԻՆՉ ԵՒ ԲԱՆԻՑ ՈՐ ՅԱՃԱԽԱԳՈՅՆՍ ՎԱՐԻՆ Ի ՇԱՐԱԳՐԱԾՍ ՈՄԱՆՑ Ի ՀԱՅՈՑ ՌՈՒՍԱՍՏԱՆԵԱՑՑ.

ԱԴԻՒՏԱՆՏ. — Բառ լատին (adjuvans, յորմէ իտալե-րէն ajutante) անցեալ ի գերմանականն ընդ ձեւովս adjutant, եւ նովին ձեւով մտեալ ի ռուս լեզու եւ եղեալ адъютантъ. զոր մերքն տառադարձութեամբ արարեալ են *աղիւտանտ*: Տգեղութիւն բառիդ առաւել յօտարու-թեանն թուի մեզ՝ քան թէ ի տառադարձութեանն, ո-րում սովոր են ականջք Հայոցս ռուսաստանեայց. եւ քանզի ոչ այլ ինչ է адъютантъ, եթէ ոչ օգնական սպարապետի, մարթ էր ապաքէն թարգմանել զայն ի մերս *Համհարզ*, եւս եւ *Օժանդակ*:

ԱԹՈՌԱՊԱՏԿԱՆ. — ԱՌԱՋՆՈՐԴԱՊԱՏԿԱՆ. — ՎԱՆՔԱՊԱՏԿԱՆ. — ՎԻՃԱԿԱՊԱՏԿԱՆ. — ՕՏԱՐԱՊԱՏԿԱՆ. — Բարդութիւնքդ այդոքիկ ոչ միայն տգեղութիւն յոյժ ունին երկայնութեամբն իւրեանց եւ այլանդակութեամբ, այլ եւ վրիպականութիւն մեծ, այնու՝ զի բառդ *պատկան* ի մերումս լեզուի նշանակէ *յարմարաւոր*, *դիպան*, *խաչադէպ*, *բարեդէպ*, — ռուսերէն способный, приличный, удобный, տաճկերէն *ույղուն* —, եւ ոչ թէ *սեպհական*, *յատկացեալ*, որ է ռուսերէն собственный, принадлежащій, տաճկերէն *մախսուս*. եւ թէպէտ սովորութիւն է ոմանց ասել, «Կալուածն այն *պատկանի* Աթոռոյն, կամ Առաջնորդին» եւ այլն, բայց չիք երկբայութիւն՝ զի թիւր է ասացուածդ եւ ռամկական. զի ըստ նախնեացն իմանալոյ նշանակէ՝ թէ «Կալուածն այն *վայել է* կամ *ի դէպ է*, *պատշաճ է*, Աթոռոյն». ուր դիտումն ասողին ոչ այն է, այլ այս՝ թէ Աթոռոյն է *սեպհականութիւն*, կամ *ստացուած սեպհական*: Եւ չասիցէ ոք՝ թէ ապա զի՞ր բարդութիւնս պարտ իցէ փոխանակել ընդ այդոցիկ: Չկարծեմք թէ հարկ ինչ ստիպողական կայցէ ի վերայ՝ բարդութիւնս *անբաժանելիս* յօրինելոյ յամենայն դէպս. Ո՞չ լաւ իցէ այլ ինչ դարձուած հայկական տալ այդպիսի իմաստից՝ քան թէ վրիպական եւ անհեթեթ բարդութիւնս կարկատել: Մեզ թուի թէ մարթ է կամ ածանցական անուանս փոխանակել ընդ բարդիցդ՝ ըստ իւրաքանչիւր բառի յարմարութեան, եւ ասել, *աթոռային*, *առաջնորդական*, *վանական*, *վիճակային* կամ *թեմական*, *օտարային*. եւ կամ լաւ եւս՝ յատկացուցիչս առնել

զբառսդ ի հոլով սեռական՝ ըստ յատկութեան լեզուիս մերոյ, եւ ասել, «Կալուածք կամ հասք եւ կամ ծախք *Արքունոյ*, *Առաջնորդի*, *Վանաց*, *Վիճակի*, *Օտարաց*: Քանզի յայսպիսիսն զյատկացուցիչս յածականս փոխել՝ յատկութիւն է լեզուին Ռուսաց սեպհական, յորմէ սովորեալ են եւ մերքն ասել, օրինակ իմն,

*Հայկական պատմութիւն*, փոխանակ ասելոյ՝ *պատմութիւն Հայոց*.

*Ինժեներական եւ արտիլերական ուսումնարան*, փոխանակ ասելոյ՝ *ուսումնարան զինուորական՝ ճարտարապետութեան եւ հրձգութեան*.

*Վիճակային Կոնսիստորիա*, փոխանակ ասելոյ՝ *Կոնսիստորիա վիճակի*, կամ թէ *Ատեան Առաջնորդի Վիճակին*.

*Քարտուղարական ծառայութիւն*, փոխանակ ասելոյ՝ *պաշտօն քարտուղարի*.

*Հոգաբարձական Խորհրդարան*, փոխանակ ասելոյ՝ *Խորհրդարան Հոգաբարձուաց*.

*Սինօդական անդամ*, փոխանակ ասելոյ՝ *անդամ Սինոդի* կամ *Սիւնհոդոսի*, եւ այլն:

ԱՅԼԱԴԻՐՍ. — Զայնքդ *այլադաւան*, *այլադէն*, *այլակրօն*, *այլահաւատ*, վարին ի լեզուի մերում իբրեւ ներհականք բառիցս՝ *ուղղափառ*, *ուղղադաւան*, *ուղղահաւատ*. ուստի եւ իբրու զպարսաւանաց իմն ունին զիմաստ եւ զնշանակութիւն՝ անախորժ փափուկ լսելեաց, հան-

գոյն ռուս ձայնիս иновѣрецъ. Ի Ռուսաստան սովորութիւն լեալ է այսպէս թարգմանել զանուն միոյ ի Բաժնից Ոստիկանարանի Ներքին Գործոց, զկոչեցեալն ռուսերէն Департаментъ духовныхъ дѣлъ иностранныхъ исповѣданій, *Դեպարտամենտ հոգեւոր գործոց այլադաւան ազգաց*. որ ըստ մերում կարծեացս անուղիղ է եւ անյարմար՝ ոչ միայն ըստ բառիցն *դեպարտամենտ* եւ *հոգեւոր* (զորոց ուրոյն յիւրեանց տեղիսն ասասցուք), այլ եւ ըստ *այլադաւան* բառին: Թուի մեզ թէ պարտ իցէ թարգմանել զէթ այսպէս.

*Բաժին կրօնական գործոց օտար դաւանութեանց*:

ԱՌԱՐԿԱՅ. — Բառս այս յաւուրց անտի թարգմանութեանցն Դաւթի Անյաղթի յարմարեալ, թերեւս ներելի իցէ յուսումնական գրուածս՝ իբր զթարգմանութիւն լատինականին objectum, — յորմէ գաղղ. objet, — եւ ռուս ձայնիս предметъ. Բայց ի շարագրածս Հայոց Ռուսաստանի յաճախեալ է յոյժ գործածութիւն սորին ամենայն ուրեք՝ ուր միանգամ Ռուսն предметъ ասիցէ, որով եւ խորթ հնչէ ի հայ լսելիս:

Օրինակ իմն, *առարկայք ուսման*, իմա *նիւթ* ուսման, կամ ուսանելիք. — *ըստ այսմ առարկայի* (по сему предмету), այսինքն է զայսմ խնդրոյ, զայսմանէ, ըստ այսմ, եւ այլն:

ԱՍՏԻՃԱՆ. — Պաշտօնեայք քաղաքական, զինուորական, եւս եւ ծովային պաշտամանց պետութեանն Ռուսաց բաժանին առ հասարակ ի չորեքտասան դասս

(классы), եւ կոչին աստիճանքն ի բարբառ նոցա чинъ, եւ որք ունին զմի յաստիճանաց անտի՝ чиновникъ, ըստ մերոցն թարգմանելոյ՝ *աստիճանաւոր*: Արդ պէսպէս անուանակոչութիւնք *աստիճանաւորացն* այնոցիկ՝ որպէս թէ անթարգմանելիք իցեն ի մերս բարբառ, յաճախ սովորութեամբ փոխաբերին ի հայկազանց Ռուսաստանի ըստ իւրեանց ռուս ձայնիցն՝ տառադարձութեամբ եւեթ որպէս թէ հայացեալք. որով եւ շարագրածքն յորս գտանին անուանակոչութիւնքն այնոքիկ՝ այլանդակին յոյժ եւ օտարախորթս հնչեն ի հայկական լսելիս:

Եւ են քաղաքական աստիճանքն վերուստ ի վայր դասաւորեալք՝ ըստ աղաւաղ սովորական թարգմանութեան իւրեանց այսոքիկ.

1. *Կանցլէր.*
2. *Դէյստվիտէլնի տայնի սովէտնիկ.*
3. *Տայնի սովէտնիկ.*
4. *Դէյստվիտէլնի ստատսկի սովէտնիկ.*
5. *Ստատսկի սովէտնիկ.*
6. *Կոլլէժսկի սովէտնիկ.*
7. *Նատվորնի սովէտնիկ.*
8. *Կոլլէժսկի ասէսոր.*
9. *Տիտուլեարնի սովէտնիկ.*
10. *Կոլլէժսկի սէկրէտար.*
11. *Կորաբէլնի սէկրէտար.*
12. *Գուբէրնսկի սէկրէտար.*
13. *Պրովինցիալնի սէկրէտար.*
14. *Կոլլէժսկի րէգիստրատոր.*

Զինուորականքն,

1. *Գէնէրալ ֆէլդմարշալ.*
2. *Գէնէրալ օտ կավալէրիի, օտ ինֆանտէրիի, օտ արտիլլէրիի.*
3. *Գէնէրալ լէյտէնանտ.*
4. *Գէնէրալ Մայոր.*
6. *Պոլկովնիկ.*
7. *Պոդպոլկովնիկ.*

8. *Մայօր.*
9. *Կապիտան.*
10. *Շտաբս-Կապիտան.*
12. *Պօրուչիկ.*
13. *Պօդպօրուչիկ.*
14. *Պրապօրշչիկ.*

Ծովայինքն,

1. *Գեներալ Ադմիրալ.*
2. *Ադմիրալ.*
3. *Վիցէ-Ադմիրալ.*
4. *Կօնտր-Ադմիրալ.*
6. *Կապիտան Ա դասակարգութեան.*
7. *Կապիտան Բ դասակարգութեան.*
8. *Կապիտան Լէյտէնանտ.*
9. *Լէյտէնանտք.*
13. *Միչմանք* (1):

Դիցուք արդ զերեսին զկարգս աստիճանացդ, զքաղաքականս ասեմ եւ զզինուորականս եւ զծովայինս, թարգմանելով զՌուսացն ի մերս՝ որպէս մեզն ի դէպ թուեցաւ, եւ քաջազունիցն թողլով հայերենագիտաց յարմարել առ մէն մի ի նոցանէ բառս առաւել պատշաճաւորս։

Քաղաքականքն,

1. Канцлеръ, Ատենադպիր Արքայի, Մեծ Քարտուղար.

2. Дѣйствительный Тайный Совѣтникъ, Ներգործական Ներքին Խորհրդական.

---

(1) Որպէս եւ ի ցուցակսդ տեսանի, ոչ ամենայն աստիճանքն քաղաքականք ունին զհամազօր եւ զհամապատիւ աստիճանս ի զինուորականսն եւ ի ծովայինս. այլ եւ ի քաղաքականաց անտի աստիճանքն 11 եւ 13 դասուց այժմ ոչ եւս ի կիր արկանին։

3. Тайный Совѣтникъ, Ներքին Խորհրդական.

4. Дѣйствительный Статскій Совѣтникъ, Ներգործական Խորհրդական Պետութեան.

— Оберъ-Прокуроръ, Աւագ Օրինապահ կամ Գործակալ.

— Герольдмейстеръ, Նշանապետ.

5. Статскій Совѣтникъ, Խորհրդական Պետութեան.

6. Коллежскій Совѣтникъ, Խորհրդական Ատենի.

— Военный Совѣтникъ, Խորհրդական Զօրաց.

7. Надворный Совѣтникъ, Խորհրդական Պալատան.

8. Коллежскій Ассесоръ, Ատենակալ.

9. Титулярный Совѣтникъ, Խորհրդական Պատուոյ.

10. Коллежскій Секретарь, Ատենական Քարտուղար.

11. Корабельный Секретарь, Նաւական Քարտուղար.

12. Губернскій Секретарь, Նահանգական Քարտուղար.

13. Провинціальный Секретарь, Գաւառական Քարտուղար.

— Регистраторы: Сенатскій, Синодскій, Кабинетскій, Համարակալք՝ Ծերակուտին, Սինհոդոսի, Խորհրդարանի Կայսեր.

14. Коллежскій Регистраторъ, Համարակալ Ատենի:

Զինուորականք,

1. Генералъ-Фельдмаршалъ, Մեծ Սպարապետ.

2. Генералъ отъ Кавалеріи, отъ Инфантеріи, отъ Артиллеріи, Զօրագլուխ Հեծելազօրաց, Հետեւակազօրաց, Հրազինաւորաց.

3. Генералъ-Лейтенантъ, Տեղակալ Զօրապետ.
4. Генералъ-Маіоръ, Զօրագլխապետ.
6. Полковникъ, Գնդապետ.
7. Подполковникъ, Փոխանորդ գնդապետի.
8. Маіоръ, Զօրավար.
9. Капитанъ, Հազարապետ.
10. Штабсъ-Капитанъ, Փոխանորդ Հազարապետի.
12. Поручикъ, Հարիւրապետ.
13. Подпоручикъ, Փոխանորդ Հարիւրապետի.
14. Прапорщикъ, Յիսնապետ.

Ծովայինքն,

1. Генералъ-Адмиралъ, Մեծ Ծովակալ.
2. Адмиралъ, Ծովակալ.
3. Вице-Адмиралъ, Փոխանորդ Ծովակալի.
4. Контръ-Адмиралъ, Օգնական Ծովակալի.
6. Капитанъ 1-го ранга, Հազարապետ Ա կարգի.
7. Капитанъ 2-го ранга, Հազարապետ Բ կարգի.
8. Капитанъ-Лейтенантъ, Տեղակալ Հազարապետի.
9. Лейтенанты, Տեղակալք.
12. Мичманы, Նաւաստիք:

Արքեպիսկոպոս. — Յայտ իսկ է զի հելլենացի է բառս այս, ἀρχιεπίσκοπος, եւ նշանակէ *եպիսկոպոսապետ*, *աւագ եպիսկոպոս*, գլխաւոր յեպիսկոպոսունս, որպէս եւ *արք-երէցն* է աւագ երէց, աւագ քահանայ, եւ *արքիդիակոնն* սարկաւագապետ, աւագ սարկաւագ: Արդ որպէս ան-

յարմար է ասել կամ գրել զատաբար, *արք երէց*, կամ *արքի դիակոն*, նոյնպէս անյարմար թուի գրել *Արք եպիսկոպոս*, որպէս սովոր են ոմանք, մանաւանդ ի Ռուսաստան. ուր ռամկօրէն իմն ասի եւ *արքութիւն*՛ իբրեւ տիտղոս արքեպիսկոպոսի. զոր օրինակ, "այն որ ընկալաւ *զարքութիւն*„ նշանակէ ըստ նոցա բանիցն, թէ որ եպիսկոպոսն էր՛ եղեւ արքեպիսկոպոս: Եւ զի օրինակաւ եւս յայտ արասցուք զանտեղութիւն զատանելոյն *զարքն յեպիսկոպոսէն*, ահա եւ զբառն *Քորեպիսկոպոս* (որ նոյնպէս յունարէն է) ապաքէն չգրէ ոք *Քոր եպիսկոպոս*, եւ ոչ յառաջնոյ գրեա թէ աննշան բառէն ի մերում լեզուիս՛ կազմէ ոք զվերացեալդ *քորութիւն*: Գոյ արդարեւ ի գրուածս ինչ ուրեք բառս *արհի* զատաբար ասացեալ *յեպիսկոպոս* բառէն, եւ ոչ կից նմին՛ *արհիեպիսկոպոս*. բայց *արք* առանձինն ոչ ուրեք:

Արտագրել. — Աղաւաղ թարգմանութիւն ռուս ձայնիս списывать, որ է հայերէն *ընդօրինակել*, *օրինակել*, *գաղափարել*, *առնուլ զհաւասարն*, *փոխագրել*:

Բարեկարգ. — Ըստ եկեղեցական կանոնացն եւ օրինաց Ռուսաց՛ հոգ եւ խնամք բարեկարգութեան եկեղեցեաց յանձնին աւագերիցանց կամ երիցանց ոմանց, որք ի նոցա բարբառն благочинный կոչին: Զսոյն զայս կոչումն պարզապէս թարգմանեալ ոմանց ի մերոցն բառիւս *բարեկարգ*, այսպէս անուանեն զերիցունսըն կարգեալս ի վերատեսչութիւն եկեղեցեաց քանի

մի գիւղօրէից, եւս եւ քաղաքաց ինչ եղելոց ի վիճակս Հայաստանի, առանց թերեւս միտ դնելոյ՝ զի *բարեկարգն* ի մեզ զիրաց եւեթ ասի՝ իբրեւ *կանոնաւոր*, *բարիոք կարգաւորեալ*, համզոյն ռուս ձայնիս благоустроенный. Արժան էր արդեօք զէթ զանուն *բարեկարգին* յարմարել այնմ պաշտօնէի, թէպէտ եւ առ այս եւս չունիցիմք առ ի նախնեաց զվկայութիւն:

ԲԱՐՁՐ ԱՐԺԱՆԱՊԱՏԻՒ. — ԲԱՐՁՐ ԱՐԺԱՆԱՊԱՏՈՒԹԻՒՆ. — ԲԱՐՁՐ ԳԵՐԱԶԱՆՑՈՒԹԻՒՆ. — ԲԱՐՁՐ ՍՐԲԱԶԱՆ. — ԲԱՐՁՐ ՍՐԲԱԶՆՈՒԹԻՒՆ. — Սովորութիւն է առ Ռուսս, նոցին ինքեանց եւս ոչ ամենեցուն ախորժելի, տալ քաղաքական եւ եկեղեցական իշխանաւորաց իւրեանց տիտղոս կամ անուանս պատուոյ յարաքարդս եւ երկայնաձիգս. որինակ իմն, ստորիկանաց եւ անդամոց ծերակուտին եւ այլոց ոմանց—Высокопревосходительство, որպէս թէ ասէր ոք հայերէն, *Բարձրագերազանցապատւութիւն.* վարդապետաց — Высокопреподобіе, որպէս թէ *Բարձրարժանապատուութիւն.* եպիսկոպոսաց — Преосвященство, *Գերասրբազնութիւն*. արքեպիսկոպոսաց—Высокопреосвященство, *Բարձրագերասրբազնութիւն*. — սովորութիւն մտեալ առ նոսա ի նուաց ժամանակի բիւզանդեան կայսերութեան. ուր յառաջն եւ նոյնք եւ նոքա ոչինչ ընդհատ յայլոց վաղեմի ազգաց՝ փարէին անուանս պատուոյ պարզս եւ անպաճոյճս եւ կարճառօտս. որինակ իմն, *Մեծութիւն*, *Տէրութիւն*, *Ծերութիւն*, *Սրբութիւն*, եւ այլս այսպիսիս: Արդ կամեցեալ մերոցն յարմարել

եւ՝ ի մերումս լեզուի բառս բառ կարգի համաձայնս առս ձայնից, հաւանեալ են՝ չգիտեմ որպէս՝ յօրինել զբառ-արդ, *Բարձր Արժանապատուէդ*, *Բարձր Գերազանցդ*, *Բարձր Սրբազանդ*, եւ այլն, եւ ի գործանէ զմերացեալն բառ կարգի: — Մինչչեւ ցուցեալ զանզեղութիւն այդպիսւոյ թարգմանութեան՝ յուշ արասցուք աստէն, զի եւ լատինական խանգարիչքն լեզուիս մերոյ յեօթնեւտասներորդի դարուն, զլատին եւ զիտալացի տիտղոսդ excellentissimus եւ illustrissimus թարգմանէին հայերէն *գերազանցագունեղ* (զոր օրինակ, *հրամանաւ գերազանցագունեղի ծերակուտին*), եւ *վսեմաշուք*. յորմէ եւ զմերացեալն կարկատէին — *վսեմաշքութիւն*: Իցէ թէ եւ մերքն այժմու բանասէրք անձապարէին ի բաց լքանել վաղագոյն զեկամուտ նորաձեւութիւնս այժմեան տիտղոսաց, որպէս վաղ ուրեմն բառ արժանւոյն խոտեցաւ եւ պնկարգեցաւ լատինաձայնոցն:

Բառս *բարձր* ի մերում լեզուիս յայտ առնէ սովորաբար զնիւթական եւեթ բարձրութիւնս լերանց, ծառոց, երկնից, աշտարակաց, շինուածոց, սեանց, հսկայից, եւ այլն. եւ դժուար ուրեք զբարոյական ինչ մեծութիւն համեմատական՝ իբրեւ զներհակսն բառիցս *խոնարհ* եւ *նուաստ*. օրինակ իմն, Առաջի մարդկան *բարձր*: *Բարձր* բանիւք բարբառանիս: *Բարձրն* նստայ-իսս: Գնացին ի *բարձր* պարանոց, եւ այլն:

Արդ ուրեմն անյարմար է թարգմանել բառիւս *բարձր*, եւ միանգամայն զատաբար ասել, *բարձր սրբազան*, *բարձր արժանապատիւ*, *նորին բարձր արժանապատուութիւն*,

*Նորին Քաջափառ Սրբազնութիւն.* այլ հարկ է գոհ լինել՝ զէթ այսպիսիս սեպհականելով մակդիրս եկեղեցական աստիճանաւորաց.

Արքեպիսկոպոսաց, *Ամենապատիւ Սրբազան Տէր.* — *Ձեր Ամենապատիւ Սրբութիւն.*

Եպիսկոպոսաց, *Գերապատիւ Սրբազան Տէր.* — *Ձեր Գերապատիւ Սրբութիւն.*

Վարդապետաց. *Գերապատիւ Տէր.* — *Ձեր Գերապատիւ Տէրութիւն.* կամ *Բարձրապատիւ Հայր*, եւ այլն:

Քահանայից, *Արժանապատիւ Տէր.* — *Ձեր Արժանապատիւ Տէրութիւն:*

Եւ քաղաքական իշխանաւորաց այսպիսի.

Արքայազանց. *Վսեմափայլ Տէր.* — *Ձեր Վսեմափայլութիւն.*

Ոստիկանաց եւ անդամոց ծերակուտի, *Վսեմապատիւ Իշխան.* — *Ձեր Վսեմութիւն.*

Զօրապետաց, Դատաւորաց եւ այլոց, *Մեծարգոյ Տէր.* — *Ձեր Մեծարգոյ Տէրութիւն:*

ԲՈՒԼՐԱԳՐՈՒԹԻՒՆ. — Բառ անպէտ հնարեալ ի ռամկախօս գրագրաց ոմանց՝ ի նշանակել զգրութիւն անբողջ, գրուած անթերի, ամբողջ պատճէն:

ԳԱՆՁԱՆԱԿԱԴՐԱՄ. — Առ ի խորշելոյ յայսպիսեաց աւելորդ բարդութեանց, մեզ թուի թէ մարթ էր՝ փոխանակ այսր բառի պարզաբար *գանձանակ* կոչել զարծաթն հաւաքեալ ի գանձանակս եկեղեցեաց. եւ եթէ հարկն պահանջիցէ՝ ասել, *դրամ ի գանձանակէ:*

ԴԱՐՆԱԼ (*առ մեղսական իշխանութիւնն, առ կուսակալն եւ այլն*). — Նիւթական եւ ստարախորթ թարգմանութիւն ռուս բային обратиться, որ է *դիմել*, *գալ*, *առաջ տանել*, եւ այլն:

ԴԻԱԶԱՐԴ. — Բառ նորահնար՝ ի նշանակել զկերպասն կամ զհանդերձ զոր սովորութիւն է արկանել ի վերայ ննջեցելոց ի յուղարկաւորութեան նոցին: *Դիազարդն* ի մերում լեզուիս զզարդարողն եւ զպատող կամ զմռսող դիականց նշանակէ. Թող զայն, այլ եւ իմաստ բառիցդ *դի* եւ *դիակն* յայտնէ զհասարակ մեռելոց մարդկան ունի զնշանակութիւն՝ հանգոյն տաճկականին *լէշ*: Դարձեալ եւ բառդ *զարդ* ի բարդութիւնս առ հասարակ առնու զնշանակութիւն ածականի, եւ նշանակէ *զարդարեալ* կամ *զարդարող*: Յաղագս այսր ամենայնի յարմարագոյն արդեօք լինէր փոխանակել ընդ *դիազարդ* ձայնիդ զբառս *օրոց*, կամ *օրոց հանգստեան*, եւ կամ այլ ինչ պատշաճական:

ԵՆԹԱՐԿԵԼ. — Բառ անհարազատ ոգւոյ եւ սովորութեան լեզուիս՝ հնարեալ ի հելլենախօս թարգմանչացն մերոց առաջնոց, եւ ի վերջնոցս համարձակ ի կիր արկեալ՝ նշանակութեամբ ռուս ձայնիս подвергать, որ է հայերէն *ներքոյ արկանել*, *առաջի տանել*, *մատուցանել*, եւ այլն:

ԹԵԼԱԳՐՈՒԹԻՒՆ. — Ոմանց հաճոյ թուեցաւ այսպէս թարգմանել զյունականն *թելեգրաֆիա*, յորմէ եւ Ռուսացն телеграфъ, телеграмма եւ այլն, — թերեւս կարծելով

թէ նկրտեսցի բառիդ առաջին մասն զնոյն ունիցի նշանակութիւն՝ զոր ինչ եւ մերն *փեղ*. մինչդեռ յայտնի է զի առ Յոյնս τέλη (*փեղի*) ոչ *փեղ* նշանակէ, այլ *հետի*. ուստի եւ ի դէպ թարգմանեալ է այլոց *հետա-գրութիւն* եւ *հետագիր*: — Այսպիսի վրիպակ տեսանի եւ ի բառն *Մետրիխական*, զորմէ ի կարգին:

ԹԵՄԱԿԱՆ. — Բառս *թեմ* յունական է ի բնէ, եւ ոչ ի հնոցն մերոց նախնեաց ի վար արկեալ, այլ ի յետին մատենագրաց՝ նշանակութեամբ *վիճակի* առաջնորդութեան. յորմէ կազմեալ են մերազնեայք Ռուսաստանի զբարդդ *Թեմակալ* (օրինակաւ *կողմնակալ*, *կուսակալ*, *ծո-վակալ*, *գործակալ* բառից), իբրեւ ի թարգմանութիւն ռուս ձայնիս епархіальный (начальникъ), եւ վարեն այսպէս, *Թեմակալ Առաջնորդ*. որով *թեմակալն* լինի ածական Առաջնորդին, որ աւելորդ թուի մեզ, զի նման է այնմ զոր ասիցէ ոք, *ծովակալ սպարապետ*: Չիք երկբայու-թիւն զի ոչ լաւ քան զբառդ է եւ միւսն, *Վիճակաւոր Առաջնորդ*, որ յաճախ եւս վարի յոմանց: Եւ միթէ ոչ շատ իցէ ասել, *Առաջնորդ վիճակի*: — Տես եւ ՎԻՃԱ-ԿԱՅԻՆ, ՎԻՃԱԿԱՒՈՐ:

ԺԱՌԱՆԳԱՒՈՐԱՑ ԴՊՐՈՑ. — Ի վերջին ժամանակս սովորեցին ոմանք այսպէս անուանել զեւրոպացւոցն Seminarium (*սեմինարան*), ռուսերէն Семинарія, որ է ուսումնարան եկեղեցականաց, կղերիկոսարան, դպրանոց: Արդարեւ իսկ բառս *ժառանգաւոր* եղեալ է ուրեք ի նախնեաց մերոց հանդէպ յունական ձայնիս κληρικός (*կղերական*),

որոյ նախնական նշանակութիւնն է *ժառանգական*, *ժառանգաւոր*, ի բառէս κλῆρος, այն է *վիճակ*, *մասն*, *բաժին ժառանգութեան*. սակայն մեզ թուի թէ լաւ էր զայլաբանականս զայս կոչումն պահել ի պէտս աստուածաբանական եւ բարոյական խօսից եւ գրուածոց, եւ փոխանակ ասելոյ ռամկական շարադասութեամբ *Ժառանգաւորաց դպրոց*՝ կոչել զուսումնարանսն այնպիսիս լոկ *Դպրանոցս*՝ կամ *Դպրեվանս*, որովհետեւ անդստին ի վաղ ժամանակաց սովորութիւն լեալ է առ մերսն *դպիրս* անուանել զտորին պաշտօնեայս եկեղեցւոյ, յորոց ի կրթութիւն սահմանեալ են ուսումնարանքն այնորիկ: — Յաւելցուք եւ զայս ինչ ասել, զի վարումն ձայնիս՝ *Ժառանգաւորաց Դպրոց* զիւտ է հայկազանց Տաճկաստանի, եւ ոչ Ռուսիոյ:

Ի. — Կանոն եւ սովորութիւն լեզուիս մերոյ պահանջեն՝ զի ամսաթիւք նշանակեսցին ի տրական հոլով, որ եւ բնական է. իսկ մերազնեայք ոմանք Ռուսացն հետեւելով սովորութեան՝ գրեն ի բացառականն, *ի 20-են մայիսի* (отъ 2-го мая), որ է անտեղի առ մեզ եւ այլանդակ:

Իսկական. — Անպէտ թարգմանութեամբ ռուս բառիս: подлинный, подлинникъ, վարի յոմանց յայս ոճ բանի, «*Ընդ իսկականին համեմատ է*»: զոր վայելչագոյն եւ ուղղագոյն եւս է թարգմանել, «Համեմատ է *բնագրին*, կամ *սկզբնագրին*»:

Լուսաւորչական.— Այս մակդիր հնարեալ ի Ռուսաստան օրինակաւ բառիս *փրկչական*, ընծայի յերեսնից կամ ի քառասնից ամաց հետէ *բնիկ* հայկազանց, այսինքն է այնոցիկ որ են ազգաւ եւ դաւանութեամբ Հայք իցեն, եւ գլուխ եկեղեցւոյ իւրեանց ճանաչիցեն զԱթոռակալս՝ այսինքն է զյաջորդս սրբոյ Հօրն մերոյ Գրիգորի Լուսաւորչին. եւ այս՝ յորոշումն ի *կաթոլիկ* կամ *պապական* եւ *բողոքական* Հայոց, որք օտարացեալք են ի դաւանութենէ Հայաստանեայց եկեղեցւոյ, եւ միաբանամայն չհնազանդին իշխանութեան սրբոյ Աթոռոյն Էջմիածնի: Հայկազունք Ռուսաստանի զնոյն մակդիրդ *Լուսաւորչական* թարգմանեալ են ռուս ձայնիւ Григоріанинъ (եւ ի պաշտօնական գրուածս ինչ՝ փոփոխակաւ եւս Грегоріанинъ), որ է *Գրիգորեան*: Ըստ այսմ Ռուսք զՄիւնոդոսն սրբոյ Էջմիածնի կոչեն Эчміадзинскій Армяно-Григоріанскій Синодъ, եւ մերքն՝ *Լուսաւորչական Հայոց Սինոդ սրբոյ Էջմիածնի*:

Արդ խնդիր ի մէջ արկանի նախ՝ թէ հարկ էր արդեօք առնել զնորաձեւութիւնդ զայդ առ ի խտրելոյ զբնիկ Հայս ի սակաւաթիւ հատուածելոց անտի ի մերմէ եկեղեցւոյս. Ոչ ապաքէն մեծագունին մասին ազգիս պարտ եւ պատշաճ էր կալ՝ եւ մնալ յիւրումն սեպհական եւ պարզ անուանակոչութեան, եւ առանց իրիք յաւելուածոյ պահել զկոչումն *Հայ*, եւ *Հայաստանեայց եկեղեցի*, կամ *Եկեղեցի Հայոց*, առանց բնաւ միտ դնելոյ՝ թէ զոր անուն առնուցուն ինքեանց ինքնակամ զատուցեալքն ի նմանէ, այսինքն *հռովմէա-*

*կանքն*, որ եւ *կաթոլիկք* կամ *պապականք*, եւս եւ *հայ-հռոմք* եւ *բողոքականք*, *աւետարանականք*, *անգղիականք*, եւ որ այլն եւս:

Երկրորդ, եթէ եւ հարկ ինչ որպիսի եւ իցէ ստիպէր հնարել զմակդիր որոշիչ բնիկ Հայոցս ի *կաթողիկաց* եւ յայլոց, ի դէպ էր արդեօք ստեղծագործել զձայնսդ *Լուսաւորչական* կամ *Գրիգորեան*, քան թէ զայլ ինչ: — Թուի թէ ոչ: Քանզի զձայնդ *Լուսաւորչական* կամ *Գրիգորեան*՝ թէպէտ եւ ամենայն իրօք բնիկ Հայկազանցս սեպհական խոստովանիցի ամենայն ոք, իբրեւ զյայտարար համատարիմ հետեւողութեան մերոյ վարդապետութեանց եւ աւանդից սրբոյ Լուսաւորչին, եւ հնազանդութեան օրինաւոր յաջորդաց նորա,—սակայն ապաքէն եւ պապականքն ոչ խորշին յանուանակոչութենէ այտի. զի համարին թէ ինքեանք հաւատարմագոյն եւս հետեւողք իցեն վարդապետութեանց Լուսաւորչին: Չիք երկբայութիւն՝ զի սխալեն նոքա յայս կարծիս իւրեանց. բայց հարկ էր նախ զսխալանս նոցին յայսմ մասին յայտ յանդիմանութեամբ ցուցանել, — զոր չեւ եւս արար ոք ըստ արժանւոյն,—եւ ապա թէ ի հրաժեշտի կացուցանել զնոսա ի *լուսաւորչականս* ձայնելոյ զանձինս իւրեանց:

Զանտեղութիւն *Լուսաւորչական* կամ *Գրիգորեան* վերակոչելոյ զազգս մեր եւ զեկեղեցի նկատեալ տեսին եւ այլք ոմանք ի նոցին իսկ ի Հայկազանց Ռուսաստանի. այլ զի եւ նոքա եղեալ են ի մտի՝ թէ անպատճառ հարկ ի վերայ կայ մակդիր ինչ հայթհայթել յո-

բոլորումն մեր ի *կաթոլիկաց* եւ ի *բողոքականաց*, մտաբերեցին սեպհականել մեզ փոխանակ *Լուսաւորչական* բառիդ զձայնս *Առաքելական*, իբրու առաքելոցն սրբոց (*Թադէոսի* եւ *Բարթողիմէոսի*) քարոզութեանցն եւ կանոնադրութեանց հաւատարիմ հետեւող: Կամ թէ այսու օրինակաւ կամեցան արդեօք այնպիսիքն սեպհականել իմն մերումս Եկեղեցւոյ զմին ի չորից անուանեալ նշանաց *միայնոյ սուրբ կաթուղիկէ* եւ *առաքելական* Եկեղեցւոյն Քրիստոսի, որպէս *զկաթուղիկէ* անունն սեպհականեալ են անձանց լատինք եւ հռովմէականք, իբրու թէ նոցայն միայն իցէ *ընդհանրական* Եկեղեցի: Ապաքէն մեք տարադէպ համարիմք իրաւամբք զայս գործ հռովմէականաց, եւ բողոք հարկանեմք՝ թէ եւ մերս եկեղեցի *կաթուղիկէ* է, եւ ոչ հերձուածող. եւ ընդէր ուրեմն կամիցիմք հետեւողս լինել օտարացն անձնահաճ խտրասիրութեան (exclusivisme), եւ ընդէր զոր ինչ յայլսն պախարակեմք՝ զնոյն եւ մեք գործիցեմք:

Ասիցէ ոք. եւ զո՞ր մակդիր կամ զանուանակոչութիւն պարտ իցէ ուրեմն սեպհականել մերումս Եկեղեցւոյ յորջորջումն յայլոց անտի՝ փոխանակ *Լուսաւորչական* եւ *Գրիգորեան* կոչմանց: Պատասխանի առնեմք՝ թէ եւ ոչ զմի ինչ. զի որպէս ընդ դարս բազումս զանազանեալ է ազգս մեր եւ եկեղեցի յայլոցն՝ *Հայ* անուամբն եւեթ, թող նովիմբ զանազանեսցի եւ յաւիտեան. եւ զինչ վնաս անտի: *Եկեղեցի Հայոց* կամ *Հայաստանեայց Եկեղեցի*. այս է բնիկն մեր անուանակո-

չութիւն ըստ դաւանութեան, եւ այսու եւս ի դէպ յոյժ մասն եմք կաթուղիկէ եւ ուղղափառ Եկեղեցւոյն Քրիստոսի, եւ շատ է մեզ: Բայց վերջին լուծումն խնդրոյս պահի հարկաւ Սիւնհոդոսին Ս. Էջմիածնի:

ԽԱՉԱԿԻՐ. — Ըստ նախնեացն մերոց իմանալոյ՝ բառդ *խաչակիր* զբարձող խաչին Քրիստոսի նշանակէ, որ եւ *խաչազգեաց* եւս ասի.—իբր զի եւ յունականն σταυροφόρος ցուցանէ *զկրող* եւ *զզեցող խաչի* միանգամայն: — Ի յետին ժամանակս ի դէպ յարմարեալ է ձայնդ *խաչակիր* (крестоносецъ) այնոցիկ յարեւմտեայ քրիստոնէից՝ որք զինու զօրութեամբ միաբանեալք խաղացին յարեւելս՝ ազատել զԵրուսաղէմ ի ձեռաց այլազգեաց. քանզի խաչանիշս ագանէին նոքա հանդերձս, եւ զէնս խաչադրոշմս ունէին: Իսկ մերքն որ ի Ռուսիա *խաչակիր* ախորժեցին կոչել զպատուեալն խաչիւ պարանոցի, զոր եւ կոչեն *լանջական խաչ* (наперсный крестъ): Մերթ եւ զպատուեալն ի քաղաքական իշխանութենէ ասպետական խաչիւ՝ կոչեն *խաչակիր ասպետ*: — Մեզ թուի թէ լաւ իցէ զպատուեալսն խաչիւք պարանոցի *խաչազարդս* անուանել. իսկ եթէ ոք եւ ասպետ իցէ, զասպետութեանն կարգ միայն յիշատակել՝ առանց աւելորդ ածականի:

ԾԱՅՐԱԳՈՅՆ. — Ըստ մերումս լեզուի՝ *ծայրագոյնն* նշանակէ զայն ինչ որ ի ծայրն իցէ իրաց, յառաջինն կամ ի հուսկ վերջին. եւ չասի *զանձանց*: Սովորութիւն լեալ է ի յետին դարս ասել, *ծայրագոյն վարդապետ*,

*Ծայրագոյն պատրիարք*. առաջնովն նշանակի վարդապետն
աստուածաբանութեան, որ ընկալեալ իցէ ըստ օրինի
եւ ըստ կարգեալ արարողութեանց զտասնեակ աս-
տիճանս վարդապետութեան. իսկ զերկրորդն վարեն
արդ Հայկազունք Ռուսաստանի իբրեւ զմի ի մակա-
դրական տիտղոսաց Կաթուղիկոսի ամենայն Հայոց,
այսպէս, *Ծայրագոյն պատրիարք կաթողիկոս*. եւ ի ռուս
լեզու զնոյն փոխաբերեալ ասեն, верховный патріархъ
каѳоликосъ.

ԿԱՅԱՆԱԼ (օրագրութեան). ԿԱՅԱՑԵԱԼ է (օրագրութիւն).
— Նիւթական եւ սխալ թարգմանութիւն ռուս ձայնիս
состояться, состоялось, փոխանակ ասելոյ *կազմել* զօրա-
գրութիւն, կամ օրագրութեամբ *սահմանել*, *սահմանեալ է*
եւ այլն: — Բազում յոյժ են ձայնք այսպիսիք՝ նիւ-
թապէս փոխաբերեալք ի մերս ի Ռուսաց լեզուէ:

ԿԱՌԱՎԱՐԻՉ. — ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ. — *Կառավարել*ն ի մեզ է
*վարել զկառս*, *կառօք գնալ* ուրեք. որպէս եւ *ղեկավարել*ն՝
*ունել զղեկն* նաւուն, *նաւապետել*. եւ երկոքին եւս նմա-
նութեամբ իմն կարեն նշանակել՝ *ունել զտնտեսութիւն*,
*տնտեսել*, *վարել*, *ուղղել*, բայց չէր արժան յաճախել զկիր-
առութիւն բառիցդ յայն միտս՝ յոր ի նախնեաց ոչ
ունիմք վկայութիւն: Ցայտ ուրեմն է զի առաւել եւս
օտարոտի եւ խորթ են ի հայկական լսելիս ձայնքդ
*կառավարիչ* եւ *կառավարչական*, որպէս յասելն « *կառավա-
րիչ սենատ*, *կառավարչական* մասն ». իբրեւ թարգմա-

նութիւն ռուս ձայնիցս, правительствующій сенатъ եւ административный; զի ի դէպ եւս էր թարգմանել զառաջինն՝ *Ղեկավար Ծերակոյտ*, կամ թէ *Հրամանատար Ծերակոյտ*, եւ զերկրորդն՝ *Գործավարական*:

ԿԱՐԳԱՒՈՐԵՑԻՆ. — Յատենական գրութիւնս վարի բառս այս անմիջապէս յառաջ քան զվճիռն, եւ է թարգմանութիւն բառին Ռուսաց определили; սակայն բայդ определить *սահմանել* է, եւ ոչ թէ *կարգաւորել*, որ ի մեզ նշանակէ *դնել ի կարգի*, *բարեկարգել*, *յարդարել*. ուստի եւ լաւ էր ասել, *Սահմանեցին*:

ԿՈՆՍԻՍՏՈՐԻԱ, ԿՈՆՍԻՍՏՈՐ. — Բառ լատին, consistorium, որ է համաժողով ատեան, ժողով դատաստանի կամ խորհրդոյ. վասն որոյ եւ յարմարեալն ի լատինականէ անտի ռուս բառ консисторія ի դէպ թարգմանեալ է ի Սահմանադրութեան անդ Հայաստանեայց Եկեղեցւոյ ի Ռուսաստան (յամին 1836) *Առաջնորդական Ատեան*: Սակայն բազումք ի բաց թողեալ զայս ուղիղ թարգմանութիւն Սահմանադրութեանն՝ համարին խորհրդաւոր իմն եւ թերեւս առաւել պատկառելի նշանակութիւն ընծայել օտարոտի ձայնին, փոխաբերելով զայն ի մերս այսպէս, *Կոնսիստորիա* կամ *Կոնսիստոր*. յոր յաւելուն եւ զանուղիղ մակդիրդ *Վիճակային*, եւ ասեն, *Վիճակային Կոնսիստորիա* այս ինչ տեղւոյ կամ նահանգի. մինչդեռ ուղիղ եւս էր ասել հայերէն, *Առաջնորդական Ատեան Վիճակի*, կամ թէ *Ատեան Առաջնորդութեան Վիճակի* այս ինչ տեղւոյ, եւ այլն:

ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ. — Անպէտ թարգմանութիւն ռուս բառիս отношеніе, որ է *տեղեկագիր*, *ծանուցագիր*:

ՀԱՄԱՁԱՅՆ. — Այս բառ մակբայօրէն ի կիր արկեալ՝ նշանակէ ի մերում լեզուի՝ *համաձայնութեամբ*, *միաբան*, *յար եւ նման*: Ի Ռուսաստան յաճախեալ է վարումն սորին իբր ի թարգմանութիւն ռուս բառիս согласно, որ է *ըստ*. զոր օրինակ, փոխանակ ասելոյ՝ *ըստ օրինաց*, կամ թէ *ըստ այս ինչ յօդուածոյ*, *ըստ առաջարկութեան*, եւ այլն, ասեն, *համաձայն* օրինաց, *համաձայն* այս ինչ յօդուածոյ, *համաձայն* առաջարկութեան, եւ այլն, որ է յոյժ տարադէպ:

ՀԵՏԵՒՈՒՄՆ. — Թարգմանութիւն բառիս Ռուսաց вслѣдствіе. *Հետեւումն* առ մեզ նշանակէ *ընթացք*, *գնացք*, *յառաջադիմութիւն*. ուստի չիք երկբայութիւն՝ զի օտար է յոգւոյ հայկաբանութեան ասելն, *ի հետեւումն որոյ*, (вслѣдствіе чего), փոխանակ ասելոյ, *որոյ վասն*, *վասն որոյ*, *վասն այսորիկ*, *սմին իրի*, *յայն սակս*, *այնր աղագաւ*, *յաղագս այսր ամենայնի* եւ այլն:

ՄԵՏՐԻՔԱԿԱՆ. — Զայս անուն ընծայեցին մերքն ի Ռուսիա մատենին՝ յորում արձանագրին անուանք մկքտելոց, պսակելոց եւ ննջեցելոց, իբրու թարգմանելով զռուս ձայնս метрическій, զածանցեալն ի գաղղիականէս métrique, որ եւ սա ծագեալ է ի լատին բառէս mater, այսինքն է *մայր*. իբր զի *Մայր մատեան*

կամ. *Մայր տումար* է մատեան այնպիսի: Զգացեալ ո-մանց զտգեղութիւն եւ զայլանդակութիւն թարգմա-նութեան *մետրիկական* բառին, եւ կարծելով թէ բառն метрическій ունիցի իւր արմատ զգաղղիականն mètre, որ է *մետր* կամ *մեթր*, բառ յունական՝ անուն *չափոյ*, կոչեցին զայնպիսի մատեանն *չափաբերականս*. այլ սխալեցին յոյժ. քանզի եւ չիք ինչ կցորդութիւն չա-փուց եւ կշռոց ընդ արձանագրութիւնս ծննդեան եւ մկրտութեան, պսակի եւ թաղման ուրուք: Վասն որոյ լաւ էր անշուշտ թարգմանել զձայնդ метрическая книга *Արձանագրական մատեան*, կամ զէթ *Մայր տումար*, եւ զվկայագիրն քաղեալ անտի (որ է метрическое свидѣ-тельство) *Արձանագրական վկայագիր*, եւ ոչ թէ *մետրիկա-կան* կամ *չափաբերական*:

ՅԻՇԵԱԼ. — Անպէտ թարգմանութիւն ռուսկական ձայ-նիս *մեզֆիր*, եւ ռուսերէնին упомянутый, յաճախեալ ի խառնախօս գրուածս մերոյ ժամանակիս, մանա-ւանդ ի լրագիրս. ուր բառ զեղեցիկ յատկութեան լե-զուիս մերոյ պարտ էր շատանալ դերանուամբքս *նա*, *այն*, եւ հոլովականօք նոցին:

ՆԱԽԱՆԴԱՄ. — Բառս *նախ* ի մերում լեզուիս յատկա-գոյնս ցուցանէ զառաջնութիւն *ժամանակի*, քան թէ զառաջնութիւն *կարգի*. ուստի եւ ուղղութեամբ ասի *նախամարդ*, *նախահայր*, *նախավկայ*, եւ այլն. իսկ ա-սելն *նախանդամ*՝ իբրու *առաջին անդամ*՝ օտար է ի

հայկաբանութենէ: Մեզ թուի եւ աւելորդ բարդութիւն նորաձեւ, մինչդեռ մարթի ասել պարզաբար՝ *առաջին անդամ* (Սիւնհոդոսի, առաջնորդական ատենի եւ այլն):

ՆԱԽԱՐԱՐ. — ՆԱԽԱՐԱՐՈՒԹԻՒՆ. — Բառդ *նախարար* բնիկ հայկական է, եւ ի մերումս լեզուի ունի զնշանակութիւն զոգցես համազօր պարսկականին *սատրապ*, եւ Ռուսացն բառի князь, *քնեազ*, որ է իշխան ցեղապետ՝ կարգեալ կամ ոչ յարքայէ ի պաշտօն երեւելի: Մերազնեայքն որ ի Ռուսիա՝ սովորեալ են *նախարար* թարգմանել զՌուսացն министръ, որ է ոչ տոհմաւ ոք ազատ կամ ազնուական, որպէս *նախարարն*, այլ Պաշտօնեայ (ի լատին ձայնէս minister) կարգեալ ի վերատեսչութիւն այսր կամ այնր մեծի բաժնի գործոց տեսչութեան աշխարհին, զոր օրինակ ներքին կամ արտաքին գործոց, ուսմանց կամ ազգային լուսաւորութեան, գանձուց, արդարութեան, եւ այլն: Արդ *նախարարութիւնն* գոլով ըստ ինքեան ազատութիւն ինչ՝ որ իջանէ ի հարց յորդիս, որպէս ասացաքն, չկարէ առնուլ ըստ օրինի զկնի իւր զբառ ինչ յատկացուցիչ պաշտօնաման. եւ որպէս չէ մարթ ասել գաղղիարէն, prince de l'intérieur, prince des affaires étrangères . . . եւ ոչ ռուսերէն князь внутреннихъ дѣлъ, князь юстицiи եւ այլն, նոյնպէս եւ ոչ ի մեր լեզու օրէն է ասել, *նախարար արդարութեան*, *նախարարութիւն արքունի պալատան*, եւ որ այլն եւս:

Սմին իրի ի դէպ թուի մեզ զեւրոպականն բառդ министръ թարգմանել *Ոստիկան*, որ ինքնին *զպաշտօնեայն* յայտ առնէ, եւ հարկաւ պահանջէ զկնի իւր զյատկացուցիչ՝ թէ որո՛յ գործոյ իցէ ոք *ոստիկան*, այսինքն է *պաշտօնակալ* կամ *պաշտօնատէր*:

Ունի *ոստիկան* բառդ եւ զայս առաւելութիւն՝ զի մարթ է դիւրաւ կազմել անտի եւ զածանցսն կարեւորս, որք են *ոստիկանութիւն* (министерство, գաղղ. ministère) իբրեւ իշխանութիւն կամ պաշտօն ոստիկանի, եւ *ոստիկանարան*, զոր Եւրոպացիք նոյնպէս министерство, ministère սովոր են անուանել՝ առ ի չգոյէ առ նոսա այլոյ իրիք յարմարաւոր բառի:

Նորին՝ ԲԱՐՁՐ ՍՐԲԱԶՆՈՒԹԻՒՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍՆ. — ՆՈՐԻՆ ՊԱՅԾԱՌԱՓԱՅԼՈՒԹԻՒՆ ՔՆԵԱԶՆ (այս անուն). — ՆՈՐԻՆ ԳԵՐԱԶԱՆՑՈՒԹԻՒՆ ԿՈՄՍՆ (այս անուն) եւ այլն. — Այս բառական թարգմանութիւն եւրոպական պատուաբանութեանց ոչ միայն օտար հնչէ ի լսելիս հայկաբանին, այլ եւ անիմանալի իմն: Քանզի նախ՝ բառդ *նորին* սեռական հոլով է դերանուանս *նոյն*, մինչդեռ Ռուսացն его (որ վարի յայսպիսիս) է *սեռական* онъ *նա* դերանուան, որպէս եւ գաղղ. son է *իւր*, եւ ոչ *նորին*. ուստի յոյժ իսկ անտեղի թուի մեզ սկիզբն առնել բանի՝ դերանուամբս *նորին*, մինչչեւ իցէ լեալ զէթ միանգամ յիշատակութիւն զանձնէն զորմէ բանն իցէ: Եւ երկրորդ՝ այդ ձեւ բանի հակառակ ելանէ կանոնաց լեզուիս մերոյ. զի չէ օրէն երբէք ասել, «Իմաստութիւն Նորա Հայրապետն. Գերազանցութիւն Նորա Իշխանն. Նորին Սրբութիւն Քահանայն» եւ այլն:

Եւ այն չէ ինչ՝ եթէ յարեւմտեայ բարբառս ընկալեալ են զայդ ձեւ բանից. զի նոքա նորաձեւեալ եւ երիկեան բարբառք են, ուր մերս վաղնջուց լեզու՝ նման է յայսմ լատինականին, յոր քաջքն լատինագէտք չընդունին երբէք նորաձեւութիւնս այդպիսիս, այլ մյլ իմն դարձուած տան բառիցն եւ բանին՝ ըստ տեղւոյն պատշաճի: Ապաքէն զնոյն եւ մեզ պարտ եւ արժան է առնել ըստ կարի՝ եթէ չկամիցիմք ապականել զպատուականութիւն լեզուիս մերոյ:

Շնչաւոր. — Կարի առ մերսն ի Ռուսաստան իբրեւ հարկ ըստ մարդաթուի, գլխահարկ. բայց տարաղէպ է բարդութիւնն եւ խոտելի. քանզի առ մեզ բառդ *շունչ* ոչ վարի երբէք որպէս *անձն* կամ *մարդ*, որպէս նշանակէ Ռուսացն душа, յորմէ կազմեալ է նոցայն подушная, գլխահարկ: *Շունչն* ի մեզ նշանակէ *ոգի* (տաճկերէն *նէֆէս*), եւ ըստ այսմ *շնչաւորամն* լինի դրամ առեալ *յոգւոյ* կամ ի *շնչոյ*, զուցէ ոչ միայն մարդկան, այլ եւ անասնոց, որ է անտեղի:

Ողորմած տէր. — Ողորմածագոյնդ տէր. — Թարգմանութիւն ասացուածին Ռուսաց, милостивый государь, милостивѣйшій государь, որ վարի ի խօսս եւ ի վերնագիրս նամակաց: Պարտ էր յուշի ունել հայկազանցս Ռուսաստանի զհանրականն կանոն ամենայն ազգաց՝ թէ չէ մարթ եւ ոչ արժան յայսպիսիսն թարգմանել միշտ ճշդիւ զամենայն ինչ ի միոյ լեզուէ ի միւս, այլ ամե-

նայն ոք պարտի գտանել յիւրումն զբառ ինչ կամ զասացուած համազօր օտարին քաղաքավարական բանի, եւ զիւրն փոխանակել ընդ օտարոտւոյն ըստ տեղւոյն պատշաճի: Օրինակ իմն, փոխանակ *ողորմած Տէր* ասելոյ' ի դէպ է ապաքէն ասել ուրեք' *Մեծարոյ Տէր*, այլուր' *Արգոյ Պարոն*, ումեմն *Քաջազօր Իշխան*, այլում *Բարեացապարտ Իշխան*, եւ այլն, եւ ոչ թէ ծառայաբար թարգմանել զօտարինսն եւ ծաղր կալ լողաց:

ԶԱՓԱԲԵՐԱԿԱՆ. — Տես ի բառն ՄԵՏՐԻՔԱԿԱՆ։

ՓՈԽԱՐԻՆԱԲԱՐ. — Բառս *փոխարէն* ի մեր լեզու ոչ այլ ինչ նշանակէ' եթէ ոչ *տրիտուր*, *հատուցումն*. եւ թէպէտ չիք առ նախնիս մակբայօրէն ասացեալ' *փոխարինաբար*, սակայն յայտ իսկ է, զի թէ գոյր եւս' պարտ էր նշանակել, *ըստ օրինակի փոխարինի*, *իբրեւ զհատուցումն փոխարինի*: Ռուսաստանեայք վարեն զձայնդ *փոխարինաբար* ի թարգմանութիւն ռուս ձայնիս заимообразно, որ է *իբրեւ զփոխ*, *իբրեւ ի փոխ*, *փոխոյ օրինակաւ*, *փոխառութեամբ*, *փոխատուութեամբ* եւ այլն:

*

Թողեալ զայլ եւս բազմութիւն օտարախորթ բառից սպրդելոց ի շարագրածս Հայոց Ռուսաստանեայց, հարկ համարիմք յիշատակել սատանօր եւ զոմանս ի ռուսաբանութեանց որ վարին ոչ միայն յաշխարհիկ բարբառ, այլ եւ ի գրոցն. այսպիսի են,

Ա. Փոխանակ *յատկացուցիչ* ձեւով դնելոյ զբառ ինչ գոյական՝ դարձուցանել զայն յածական ձեւ կամ ի մակդիր. զոր օրինակ, փոխանակ ասելոյ՝ Պատմութիւն *Հայոց*, ասել՝ *Հայկական* պատմութիւն. փոխանակ ասելոյ՝ ջուր *ծովու*, ասել՝ *ծովային* ջուր. փոխանակ ասելոյ՝ աշակերտ ուսումնարանի *գինուորական ճարտարապետութեան* եւ *հրձգութեան*, ասել՝ *ինժինէրական* եւ *արտիլէրական* ուսումնարանի աշակերտ. փոխանակ ասելոյ՝ առաջնորդ *վիճակի*, ասել՝ *վիճակաւոր* առաջնորդ. փոխանակ ասելոյ՝ գրականութիւն *Ռուսաց*, ասել՝ ռուսական գրականութիւն, եւ այլն:

Բ. Նախադաս կարգումն մասնական թուականիս *մի* (որ առաւել Տաճկաց եւ Գերմանացւոց եւ Գաղղիացւոցն է սովորութիւն), փոխանակ առնելոյ զայն յետադաս գոյականի՝ ըստ յատկութեան լեզուիս մերոյ. որպէս ասեն, «*Մի* դժուարին խնդիր. *մի* առաքինի մարդ». փոխանակ ասելոյ՝ դժուարին խնդիր մի, մարդ մի (կամ այր ոմն) առաքինի, եւ այլն:

Գ. Աւելադրութիւն եւ տարադէպ կրկնութիւն դերանուանցս, *ես*, *դու*, *նա*, *մեք*, *դուք* եւ այլն. զոր օրինակ, «*Ես* ասեմ. *ես* կարծեմ թէ... *Ես* դիտեալ եմ՝ զի ոչ յիմեքէ նիւթականէ անցանէ անմահութիւն առ մարդկութիւնս, եւ թէ *նա* ոչ զուգակցի եւ ոչ ընդ իմիք նիւթականի»:

Դ. Սոէպ կամ գրեթէ միշտ նախադասել գոյականաց զածականս՝ ըստ կանոնի տաճկական բարբառոյ, որպէս եւ Ռուսացն, եւ այլոց. մինչդեռ առաւել սեպհական է մերումս լեզուի՝ նախ զգոյականն դնել, եւ ապա զմակդիրն ածել ի վերայ. զոր օրինակ բնականազոյն մեզ թուի ասել՝ «Մառ *բարի* պտուղ *բարի* առնէ», քան թէ՝ *բարի* ծառ՝ *բարի* պտուղ առնէ.—«Թագաւոր *իմաստուն*», քան թէ *իմաստուն* թագաւոր, եւ այլն:

Ե. Զմիջանկեալ իմաստս բանից փոխանակ դնելոյ ի միջավայրի ուրեք, կամ թէ ի վերջ բանին, կցել ի սկիզբն պարբերութեանց, որ հակառակ է կանոնաց լեզուիս մերոյ. զոր օրինակ «*Բնապաշտելով զանհերպարան բարգմանութիւնս մխպաստանութեանց*, նա (կրիտիսութիւնն) առնէ զմեզ զոնեա հետազօտիչս»:

Այսպէս զասկաւս ի բազմաց անտի բառից եւ յասացուածոց առեալ՝ օրինակի աղագաւ՝ ի քննութիւն, զմնացեալսն թողումք առ ժամս յորոճումն քաջագունիցն ի հայկաբանութեան եւ ի լեզուագիտութեան: Եւ մի ոք համարեսցի թէ մեք զմերն ասելով կարծիս՝

համարիցիմք իրաւունս ունել սաստկապահանչս լինե-լոյ յստակաբանութեան ի հայ շարագրածս. քանզի ոչ անգիտանամք եւ զմերոյ հայկաբանութեան զբազմա-պատիկ թերութիւնս. այլ զի կամեցաք զպարտս մեր կատարել՝ զոր ունիմք յայսմ մասին ի պահպանել ըստ կարի զհայրենաւանդ լեզուիս մերոյ զանվթարու-թիւն. պարտք՝ որ ի վերայ կան անշուշտ եւ ամե-նայն առն հայրենասիրի:

Որպէս յասացելոցս արդէն՝ յառաջնոցն եւ ի վերջ-նոցս յայտ է, մերս խնդիր զգրոցն բարբառոյ եւեթ է, եւ ոչ *զաշխարհաբառն* կոչեցեալ ռամկական խօսից, որ տակաւ ի ձեւ եւ ի կերպարան գայ ուրեք ուրեք կա-նոնաւոր բարբառոյ, թէ ոչ առանձինն քերականու-թեամբ, գէթ յաճախ վարելովն ի գիր եւ ի բան: Թե-րեւս ոչ անազանեսցէ հասանել ժանանակն՝ յորում ունիցի ազգս մեր ընդ ամենայն տեղիս զմի միայն լե-զու աշխարհիկ՝ դիւրահաս եւ դիւրընտել ամենեցուն, որպէս ի Տաճկաստան՝ նոյն եւ ի Ռուսաստան եւ ի Պարսս եւ ի Հնդիկս. եւ որպէս հաւանեալս եմք, ոչ այնքան մեծամեծք եղիցին վնասքն որ ի բարգաւա-ճելոյ անտի ռամկականին՝ սպառնայցեն գրոցն բար-բառոյ, այսինքն է բնիկ հայկաբանութեան, որքան կասկածիմքս եւ մեք եւ ամենայն այր հմուտ եւ սի-րող պատուական լեզուին Հայոց, եթէ գէթ *բառ*ն՝ տարբերք ռամկականին՝ ոչ անհարազատք իցեն եւ ոչ ըստ քմաց յերիւրեալք եւ մուրացածոյք, այլ ամենայնն

առեալք ի գրոց, եւ կամ՝ եթէ հարկն պահանջիցէ՝ ըստ սեպհական ոգւոյ եւ կանոնաց լեզուիս մերոյ յօրինեալք ի նորոյ վայելուչ բարդութեամբք եւ ածանցիւք:

Եւ զի զայսմ անհրաժեշտ պայմանէ խօսք ի մէջ անկան, բեր եւ զայն ասասցուք առ տեղեաւս, զի ոչ սակաւ միշտ է տեսանել ի շարագրածս ոմանց ի բանասիրաց օսմանեան աշխարհին, մանաւանդ ի խմբագրութիւնս լրաթերթից եւ օրագրաց, եւ առաւել եւս արդեօք ի գրութիւնս քաջազօտի երիտասարդաց ոմանց Ռուսաստան երկրի, — տարապայման խիճ եւ սանձարձակ ազատութիւն ոչ միայն ի ձուլել եւ ի կերպաձեւել զոճ գրութեան իւրեանց ըստ ոճոյ տաճկական երկարաբանութեանց, եւ կամ եւրոպական անպաճոյճ կարծեցեալ խրթնաբանութեանց, — յորմէ թերեւս ոչ յոյժ վտանգ իցէ հայկաբանութեան, — այլ եւ ի քերթել եւ ի կարկատել բառս նորալուրս, նորաձեւս, տձեւս, մերթ եւ յոյժ այլանդակս եւ անճոռնիս կազմուածովք եւ երկայնութեամբ. զորս դիւրին է համբակաց կարծել՝ թէ գուցէ ի նախնեացն մերոց իցեն յօրինեալք եւ ի կիր արկեալք:

Օրինակի աղագաւ յիշատակ արասցուք նախ ոմանց եւեթ ի նորահնար բառից որ յաճախագոյնս վարին ի գրուածս մերազնեայց Տաճկաստանի.

| | |
|---|---|
| Ազգայնութիւն. | Անդորրել. |
| Անուրանալի. | Առաջնորդանիստ. |
| Անիյատ. | Ատոփմանակից. |
| Անձնուիրութիւն. | Անմիջապէս. |

| | |
|---|---|
| Արտօնագիր . | Համարատուութիւն . |
| Բարեբաղդաբար . | Մատակարարութիւն . |
| Բաղկանալ . | Յատկացեալ, |
| Բարձրագոյն Դուռն . | Յիշեալ . |
| Բացադրեալ (exposé) . | Նախագահել . |
| Դատաստանապէս . | Ներկայանալ . |
| Դժբաղդաբար . | Նկատմամբ . |
| Թիւրքիա . | Պաշտօնաւորութիւն . |
| Թիւրքիաբնակ . | Սահմանադրականապէս . |
| Կայանալ . | Վերաբերեալ . |
| Կանոնաւորապէս . | Վերջին ատեան կուրութիւն |
| Կացութիւն . | Վաւերագործութիւն . |
| Կնքադրութիւն . | Վերընտրելի . |
| Հասարակութիւն . | Վերբերական ժողով . |
| Հաստատութիւն (institution). | Քաղաքականապէս, եւ այլն: |

Հայկազունք Ռուսաստանի արդարեւ իսկ գովելի իմն նախանձաւորութեամբ հետամուտք եւրոպական լուսաւորութեան, թուին մեզ յերիս եւ ի չորս յեղանակս վրիպել երբեմն յանվթար հարազատութենէ լեզուիս մերոյ ի յօրինել անդ իւրեանց բառս նորանորս:

Նախ՝ առանց քաջ միտ դնելոյ հանրական կանոնաց կազմութեան բառից լեզուիս Հայոց, կարկատեն՝ որպէս ասացաք՝ բարդութիւնս անհեթեթս ծանրութեամբ եւ երկայնաձիգ կազմակերպութեամբ, զհետ երթալով յայսմ առաւելապէս գերմանացւոց լեզուի, որ հռչակեալ իսկ է ի շարս այլոց եւրոպական գողտր եւ քնքուշ բարբառոց՝ իւրովն խոշորութեամբ եւ դժուա-

բոլոր դարձուածովք: Այսպիսիք մեզ թուին, օրինակ իմն, առաջիկայքդ.

Կանոնապատշաճ.
Ջրացամաքային.
Հսկայամարմին.
Հանդիսակատարութիւն.
Անձնազսպութիւն.
Ներկայացուցումն.
Պարսկահպատակ.
Կայսրաբքայական.
Ռուսախաբնակ.
Վիպասանաձեւ.
Վարքագրութիւն.
Նախատակագրութիւն.
Կշտամբասիրութիւն.
Կրօնապաշտական.
Բարեյաւացուցանել.
Պաշտօնակատարութիւն.
Հարազատախօսութիւն.
Բանաստեղծականապէս.
Եւրոպէականութիւն.
Հրացանական վառանիւթ
(իմա *վառող հրացանի*).
Ծծեցուցանել.
Բարեացակամութիւն.
Կողինջանման գնացք.
Արիւնադարձական երակ.
Սնակուշտական աղիք.
Միջոցամորթ.
Փառակեցութիւն.

Լաւափոխութիւն.
Հիւսիսացորեան.
Կովացորեան.
Մեծակշիռ յառկութիւն.
Պտղարմատեան բոյս.
Տափակակոյտ սար.
Խցանափայտ.
Օդամարմին.
Ծակալից.
Վայրանկութեան ճանապարհամիջոցք.
Դողդողութիւն.
Մկնամսակալ.
Բերբերիսեան խաղող.
Ողնական ուղեղ.
Հսկայակրիայ.
Կերակրափող.
Սրտապատեան.
Կրծափոս.
Բալասանաբոյր.
Ոտնաթաթ.
Լեզուաշինութիւն.
Ցայտնագործութիւն (իմա *գիւտ*) Ամերիկոյ.
Պտղաւորիչ զօրութիւն.
Կատակախօսութիւն.
Ամենավերին կատարելութիւն
Երկարամիջոց խաղաղութիւն.

Հում ալեքսատր.
Կշտապնդիչ կերակուր.
Սառցակեղեւ.
Երկաթալար.
Երկպատիկ արգանտաւոր կենդանի (*խանկուրու*).
Ծառաւիղաբեկութիւն.
Գտոյտաճողմ.
Հրէական ծիւթ (*ասփաղս*).
Հողմադադարութիւն.
Բարեկամակցութիւն.
Մայրակէտ.
Ընչական Թագաւորութիւն.
Փողովակ խօսակցութեան.
Խեղդանիւթ գազ.
Ժիպակասիւն.
Սարագօտի.
Անճոգատարութիւն.
Հնդկացի. Հրեացի.

Գեղեցկուհի կամ Բելլա դօննա.
Թուլակամութիւն.
Ամենատաղանդաւոր.
Կաթիլաքար կամ Ստալաքտիտ.
Կոկոսեան ընկոյզ.
Ձիաւորի խթանք (кавалерскiе шпоры).
Հասարակական կեանք.
Առողջապահական.
Ապահովացուցանել.
Ճանաչողական դատումն.
Մանկավարժական խորհուրդ.
Կենդանախօս.
Հայախօսութիւն.
Մահացուցակ.
Առաջանիւթ (իմա *սուր*).
Համալսարանական, եւ այլն եւ այլն:

Երկրորդ, առանց միտ դնելոյ այսմ ճշմարտութեան, թէ նախնիքն մեր երանելիք, մանաւանդ առաջինքն ի մերոց պանծալի Թարգմանչաց, քանի իրաւամբ եւ որպիսի խնամով ջան ի գործ եդեալ են խոյս տալ *քուս կարի* ի խառնելոյ ի մերս լեզու պէսպէս բառս յօտարոտի լեզուաց, ի հելլենականէն ասեմ եւ յասորւոյն եւ յայլոցն, եւ պատուական ճոխութեամբ մերոյ բարբառոյս իմաստութեամբ վարելով՝ յաճախագոյնս թարգմանեալ են բնիկ հայեցի բառիւք, որպիսի են

*աւետարան*, *իմաստասէր*, *մոլորակ*, *քերական*, *առաքեալ*, *մարգարէ*, *քերթող*, *բեւեռ*, *հասարակած*, *արեւադարձ*, *զուգահեռական*, *երկրաչափութիւն*, *աշխարհացոյց*, *պատմութիւն*, եւ այլք բազումք յոյժ յոյժ, ասեն. ոչ ապաքէն եւ նախնիքն մեր առեալ են ի Յունաց բառս ոչ սակաւս, եւ անփոփոխ զձայնսն պահեալ. — ընդէր եւ մեք չառնուցումք յեւրոպականացն լեզուաց զայնոսիկ՝ որ առ յոլովս ի նոցանէ ընդունելիք են, որպէս եւ Ռուսքն առնեն: Մոռանան արդեօք պարոնայքդ՝ յորժամ զայս ասիցեն, զի նախ՝ նախնիքն մեր յակամայից իմն բռնադատեալ եւ բերեալ են յայն փոխառութիւն, որպէս յայտ է հմտից. երկրորդ՝ զի եւրոպական ազգաց լեզուք, բաց ի գերմանականէն, աղքատք են եւ չքաւորք ըստ կազմութեան բարդ եւ ածանցական բառից, որոյ վասն եւ ստէպ ստէպ ի հելլենացին դիմեն բարբառ, եւ անտի յօրինեն եւ կարկատեն բարդութիւնս ի պահանջել հարկին. իսկ մերս լեզու ապաքէն ոչ ինչ ընդհատ ի հելլենականէն ճոխ է եւ արմատական բառիւք, եւ որ մեծն է՝ կանոնաւոր դիւրութեամբ նորանորս կազմելոյ բարդս եւ ածանցս յարմարաւորս հայ լսելեաց. եւ երրորդ՝ զի Ռուսացն շարագրաց օրինակ յայսմ մասին ոչ թուի մեզ նախանձելի ինչ, այլ մանաւանդ պարսաւելի. որպէս եւ նոքին իսկ Ռուսքն ոչ ամենեքին գոհ են ընդ յաճախել օտարոտի ձայնից յիւրեանցն լեզու: Քաղեսցուք աստանօր վարկպարազի ընտրութեամբ զսակաւս յոյժ ի բազմաց անտի մուրացածոյ բառից՝ որք

Եւան զեւան ի շարագրածս մերազնեայց ոմանց ի սահմանս Ռուսիոյ.

| | | |
|---|---|---|
| Գիզիենէ, Հիգիենա. | Գրիմա. | Թարաք. |
| Տիֆուս. | Ֆունտ. | Լեվկոյ. |
| Դրամա. | Փուդ. | Սպիրտուտր. |
| Կրիտիկա. | Լոտ. | Քալցեդոն. |
| Բրոշիւր. | Ատմոսֆերեան օդ. | Բրանխիայք. |
| Դօցենտ. | Կվադրատ. | Ժելինոտ. |
| Նոտա. | Կրիսա. | Ստիգլից. |
| Պօլարիտէ. | Կրիստալ. | Պիկոս. |
| Պօլարիզացիօ. | Մուսկուլ. | Կամլոտ. |
| Կանդիդատ. | Սկելետ. | Դրա դը դամ. |
| Ինստիտուտ. | Պլատինա. | Մուզեոն. |
| Պեդագօգ. | Արսենիկ. | Կարտ, Լանդկարտ (աշխարհացոյց). |
| Պրօֆեսսօր. | Ֆօլիէ. | |
| Կրիտիկա. | Վիսմութ. | Էսպարցետ. |
| Ինքվիզիցիօ. | Քօբօլդ. | Լիւցերնա. |
| Ինսպեկտօր. | Նիքքըլ. | Սալբեյ. |
| Կօլօնել. | Վօլֆրամ. | Պօրտուլակ. |
| Ֆակուլտետ. | Մօլիբդէն. | Ռադիսք. |
| Գիմնազիա. | Գալվանական բատտերի. | Բամբուս. |
| Իդեալ. | Հիւոսկիւամոս նիգեր. | Կրոկոս (*քրքում*). |
| Փիլոսոփոս. | Ակօնիտում լիւկօկտօ-նում. | Կարտօֆլ, եւ այլն եւ այլն։ |
| Տրիբունոս. | | |
| Մագնետիսմոս. | Տօպինամբուր. | |

Երրորդ, ընկալեալ միանգամ ի բառագիրս իւրեանց զանյարիր եւ զօտարախորթ ձայնս այդպիսիս, ոչ ինչ խղճեն այնուհետեւ կազմել ի դոցանէ եւ ի մերոց ածանցական մասնկանց բառս եւս քան զեւս անհեթեթս, մանաւանդ թէ եղջերուաքաղս իմն եւ յուշկապարիկս: Օրինակ իմն,

Պէտագօգ*իկական*. Դրամա*տիկական*.

Գիզիէն*իկական*. Պրակտիկ*ական*.

*Սատիրիկական.*
*Եթիօպիական.*
*Սիրիական.*
*Մէտօղիկական.*
*Իդէալական.*
*Սէմիտիկական.*
*Օրգանական.*
*Վուլկանական.*
*Պրօֆէսսօրական*, եւ այլն
եւ այլն եւ այլն:

Չորրորդ, նովին ցաւալի հիւրընկալութեամբ, զի մի սասցից թէ ամօթալի մուրողութեամբ, սկսանին արդ ի կիր արկանել եւ նշանագիրս իմն եւ կէտադրութիւնս եւ համառօտագրութիւնս՝ սեպհականս եւրոպական լեզուաց. եւ այն ոչ եթէ առ ի չգոյէ առ մեզ համազօր նշանակաց, զուցէ եւ լաւագունից, այլ զի Եւրոպացիք առ հասարակ սովոր են նոքօք վարել ի գրուածս իւրեանց:

Այսպիսի են նախ՝ հռովմէականքն անուանեալ թուանշանք՝ արդարեւ իսկ խժականք եւ ի բնէ պակասաւորք, I, II, III, IV, V, VI, VII, VIII, IX, X, XI, XVIII..., MDCCCLXVIII, եւ այլն, փոխանակ մերոցս պատուական այբուբենից, Ա, Բ, Գ . . . ՌՊԿԸ:

Երկրորդ, կէտադրութիւնք Եւրոպացւոց , ; , : , ? , ! , № եւ այլն. որպէս թէ մեք ոչ ունիցիմք զբութ, զստորակէտ, զմիջակէտ, զոլորակ, զերկար, զտառս Թ (թուահամար) եւ որ այլն եւս:

Եւ երրորդ, տարադէպ եւ այլանդակ համառօտութիւնքս, *հ. հ.* (հարք), *պ. պ.* (պարոնայք), *թ. թ.* (թուականք), *ե. ե.* (երեսք) եւ այլն:

Աւելի իմն համարեցաք խօսել ի կարգի բանիցս զհայկաբանութենէ պանդխտելոց ի Հնդիկս եւ ի կղզիս Ովկիանու, որք թէպէտ անգղիականին զհետ երթալով բարբառոյ՝ ոչ սակաւ խօսս ի փոխ առնուն անտի անիմանալիս հայկաբանից, որպիսի են, օրինակի աղագաւ, առաջիկայքդ,

Էջէնթ (egent, գործակալ.)
Փոխենկեղեցպան.
Աբգար եւ կ$^{0}$ (c$^{0}$, ընկեր.)
Ունակացեալ.
Ջանէր.
Ֆէվրէր.
Մարչ.
Մէի.
Ջուն.
Ջուլայի, եւ այլն.

սակայն ի յօրինել եւ ի բարդել բառս նորանորս զգուշաւորագոյնք թուին քան զՀայկազունս Տաճկաստանի եւ Ռուսաստանի, զի եւ առաւել քան զնոսա ջանասէրք են յուսումն եւ ի պահպանութիւն գրոցն բարբառոյ:

Հուսկ ուրեմն վախճան արասցուք դուզնաքեայ բանիցս մերոց եւ հարեւանցի քննադատութեանց խորհրդածութեամբք ինչ քաջագունին յարդի շարագրաց հայերէն լեզուիս, բազմահմուտ Բագրատունւոյն ասեմ, որ զվարժից հայկաբանութեան ճառելով՝ այսպէս գրէ յիւրումն Քերականի. «Քերական՝ զմարմին եւեթ յօ-« րինուածոյ բանին ուսուցանէ կազմել, իսկ զհոգին՝ « տայ մտադիւր ընթերցումն հայերէնախօս եւ վայել-« չաբան նախնեացն: Բայց հոգի իմա ինձ աստանօր՝ « ոչ զճարտասանական կամ զբանաստեղծական աշ-« խոյժս իմաստիցն եւ յօրինուածոյ բանին եւ շարժ-« մանց, այլ զսոսկ նիւթական կարգուածոյ ասացածին.

«զի է եւ սորա առանձինն իւր հոգի, որ տայ նմին
«զկենդանի պատկեր երեսաց եւ զվայելուչ երանգս
«եւ զգեղ ազգային, եւ զայն ամենայն բնատուր
«շնորհս եւ զհամ՝ զոր ի քաջ հայաբարբառ նախ-
«նեաց գոյ տեսանել, եւ ի նոցանէն միայն առնուլ:
«Բայց առնուլ իբրեւ հարազատ ոք զոգին եւ ըզ-
«դէմսն՝ սեփականելով անձին զնոցա ոճն, եւ ի նո-
«ցին տոգորս ներկեալ տարրացեալ՝ ապա այնուհե-
«տեւ յինքենէ իբրեւ ի բուն աղբերէ բղխել յինքնու-
«րոյն տիպս կերպարանաց. եւ ոչ թէ զնոցա յօրի-
«նուածն եւ զարարածն յամենայնի ի փոխ եւ ի վար
«առեալ՝ իբր ի թատր ինչ զնոցին բերել կերպարանս
«հանգոյն իմն կապկաց առնելով հպտանս, կամ պէս
«զունակ առակաւոր ճային՝ աստի անտի փետրովք
«կցկցելոյ՝ փերեւետել: Զի այդպիսեօք եւ այլ եւս
«մանր եւ դիւրագիւտ հայթայթանօքն հանդերձ՝ մար-
«թի տակաւին չլինել շարագրի բնիկ հայագէտ եւ
«կատարեալ հայախօս, *մանաւանդ յօտար լեզուէ թարգմա-*
«*նելն*. . . Սակայն հարկ է եւ ի նոսին իսկ ի լեզուա-
«գէտ նախնիսն ընտրութիւն առնել. զի ոչ ամենե-
«քեան ի մի կարգ եւ ընդ մի համար են, եւ ոչ ամե-
«նեքին պատշաճք ի կրթութիւն հայերէն վայելչա-
«բանութեան: Եւ յընտիրսն անդ եւս նախամեծար
«ընտրելի են կատարելագոյն մասունք նոցին եւ հա-
«տուածք, ըստ խրատուն Կուինտիլիանոսի, եւ յայնս
«պարտ է ստէպ դեգերել եւ խոկալ. . . Թողում ասել
«զԴաւիթն Ներգինացի՝ զանյաղթն յորջորջեալ եւ

